# ԵԹԵ ՀԱՆԴԻՊԵՐ ԻՆՁ ՄԻ ԲԱՐԻ ԿԱԽԱՐԴ...




Երբ Դուք առաջին անգամ դասարան մտաք, ես տխրեցի: Պատճառն այժմ էլ չեմ հասկանում... իսկ հետո թե ինչպես անցավ երեք տարին, չիմացա:

Դուք գնացիք Երևան, անտեղյակ, թե ինչպիսի հետք եք թողել իմ հոգում, անտեղյակ, որ Ձեզ երբեք, երբեք չեմ մոռանալու:

Մի օր դասամիջոցին դարձաք ինձ, հարցրիք. «Արմենուհի, ես քեզանից ոչինչ չեմ հասկանում, չգիտեմ ամաչո՞ւմ ես ինձնից, թե՞ չես սիրում ինձ»: Ես չպատասխանեցի:

Ի՞նչն էր ինձ համրացնում, խանգարում, որ խոսեմ, ասեմ Ձեզ, որ դուք, ընկեր Ռոբերտ Սաղաթելյան, իմ մեջ Ձեզ նմանվելու փափագ եք արթնացրել:

Իսկական մարդը այժմ ինձ Ձեր պատկերով է ներկայանում: Ինչքա՜ն բան տվիք մեզ այդ երեք տարիների ընթացքում, բայց և ինչքա՜ն արագ թռան գնացին այդ տարիները:

Կարոտով, միաժամանակ արցունքով եմ հիշում անցած երեք տարիները:

Եթե հանդիպեր ինձ մի բարի կախարդ, առաջին հերթին կխնդրեի, կթախանձեի, որ ետ բերեր այդ տարիները, թեկուզ մեկ օրով, թեկուզ մեկ ժամով:

Ձեր աշակերտուհի՝

**ԱՐՄԵՆՈՒՀԻ ԴԻԼԱՆՅԱՆ**
*Վրաց. ՍՍՀ,*
*Ասպիսկի շրջ., գ. Դամալա,*
*10-րդ դասարան*



# ԵՐԱԶՆԵՐ

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

Կուզեմ թռչնի թևեր առած՝
Թռչել դեպի կապույտ երկինք,
Լողալ նրա լույթ լազուրում...
Կուզեմ նետվել գիրկը ծովի,
Ալիքների հետ պար բռնել,
Թռչունների ժիր դայլայլով զվարճանալ
Ու արբենալ ծաղիկների անուշ բույրով:
Մութ գիշերին՝ կուզեմ նետվել
Աստղերի մեջ, լուսնյակին մոտ:
Կուզեմ ծաղկել փեշերի տակ Արագածի
Ու հիանալ Արարատի գագաթներով:
Կուզեմ լողալ մեր գետերի կոհակների մեջ խոլական,
Ապա ելնել, մուշ-մուշ քնել ստվերներում մեր լեռների...

*ԱՐԵՎՀԱՏ ՇԱՄԻԼՅԱՆ*
*Վրաց. ՍՍՀ, Բոգդանովկայի շրջ.,*
*գ. Մեծ Գոնդուրա, 7-րդ դաս.*

# ԾԻԼԸ ԺՊՏԱՑ

Քամին իր հետ բերեց մի կորիզ: Նա կորիզն զգուշությամբ պահ տվեց մայր հողին և սուլելով հեռացավ: Ամպը դույլերով ջուր թափեց երկնքից, ու անձրևաջուրը ոռոգեց այն հողը, որտեղ ընկած էր փոքրիկ կորիզը: Ճիշտ է, կորիզը չէր տեսնում անձրևին, ամպին, արևին, բայց զգում էր, որ հողը խոնավացավ և իր կողքի անձրևաորդերը անցքեր բացելով ելան գետնի երես: Նա էլ էր ուզում վերև ելնել, տեսնել, ովքե՞ր կան այնտեղ, ո՞վ է իր մայրը: Կորիզը երկար չսպասեց: Մի քանի օր հետո նա գլուխը զգուշությամբ հանեց և տեսավ շրջապատը:

— Այս ի՞նչ տարօրինակ տեղ է,— շշնջաց նա:

Չորս կողմը մութ էր:

Կորիզը շատ զարմացավ.

— Էլ ինչո՞ւ են որդերը դուրս գալիս գետնի երես. միևնույն է, խավար է և՛ այստեղ, և՛ հողի տակ:

Հանկարծ անսպասելի նա լսեց մի ձայն.

— Հիմա գիշեր է, երբ լուսանա, դու կտեսնես արևին:

— Ո՞վ է արևը:

— Արևը եթե չլինի, մենք էլ չենք լինի:

— Ինչի՞ց իմացար:

— Ինչպե՞ս թե ինչից: Նա տալիս է լույս, ջերմություն...

— Քո անունն ի՞նչ է,— վիզը ծռելով շարունակեց նա:

— Ես ամենագետ դդումն եմ:

— Վա՜հ, ի՞նչ ծիծաղելի անուն է,—



*«Գիքոր»— գործ՝ ԱՐՄԵՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ, 11 տ., Երևան*

# Երևանի ցայտաղբյուրները

Փարվում եմ քեզ և համբուրվում,
Իմ ցայտաղբյո՛ւր երևանյան,
Եվ ասես թե հյութն եմ խմում
Շեկ խաղողիդ, կարմիր նռան,
Ամպն եմ խմում մեր լեռների,
Ջրվեժների շառաչը խոլ,
Այգաբացի ծաղիկների
Պաղ, բյուրեղյա ցողը ցոլցոլ:
Լռությունն եմ ես վայելում
Խորհրդավոր մեր վանքերի,
Հալված մոմի բույրն եմ խմում
Եվ խորհուրդը խաչքարերի:

*ԱՐՄԵՆ ԴԱՎԹՅԱՆ*
*Երևանի № 139 դպր., 9-րդ դաս.*

փոքրիկ ծիլը հրճվանքից տեղում պար եկավ,— դե լավ, մի՛ նեղանա, որ ամենագետ ես, ասա՛, ինչի՞ց է հողը խոնավանում:

— Անձրևից,— պատասխանեց դդումը:

— Անձրևը ո՞վ է:

— Ամպի տղան:

— Ամպը ո՞վ է:

— Ամ-պ-պ-պը-ը...— կմկմաց ամենագետը,— դե, ամ-պպպը...

— Չգիտես, չգիտես,—ուրախացավ ծիլը:

— Ո՛չ, գիտ-տտ-տե-մմ, ամպպպը երկնքքիիի թաշշկկինննաակկննն է:

— Երկինքը ո՞վ է:

— Երկինքը արևի երկիրն է:

— Իսկ դու ինձ ցույց կտա՞ս արևին:

— Այո՛, ցույց կտամ:

Հետզհետե լուսանում էր և լուսինը աստղերի հետ կարք նստած հեռանում: Իսկ հեռվում հորիզոնը շառագունում էր:

Դդումը տեսնելով արևին, բացականչեց.

— Ահա՛ արևը, նայիր վերև՛:

Ծիլը իր մատղաշ գլուխը զգուշորեն բարձրացրեց, և տեսնելով արևին, հիացմունքից ժպտաց: Նրան թվաց, թե արևն էլ իրեն տեսավ ու ժպտաց մայրական քնքուշ ժպիտով:

— Արևն իմ մա՞յրն է,— բացականչեց նա:

— Արևը բոլորիս մայրն է:

Ծիլը ժպտում էր, հավատալով, որ արևն էլ իրեն է ժպտում, մայրական քնքուշ ժպիտով:

*ԳՈՀԱՐԻԿ ՆԻԿՈՂՈՍՅԱՆ*
*Երևանի № 74 դպր., 8-րդ դաս.*

# ԾԵՐՈՒՆԻՆԵՐԸ

ԱԲԻԳ ԱՎԱԳՅԱՆ

Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Մի երեսուն տարի սրանից առաջ, մեր գյուղում՝ Կաթնաղբյուրում, հանդիսավոր արարողությամբ նշեցին նոր ջրանցքի բացումը: Շրջակենտրոնից, մոտ ու հեռու գյուղերից բավականաչափ մարդիկ էին եկել: Հուլիսյան պայծառ երկնքով ու վառվռուն արևով կանաչ-կարմիր ուրախ օր էր: Երբ փականը բարձրացրին և պղտոր ջուրը թափով հոսեց ջրանցքով, մարդիկ բերկրանքից վեր նետեցին գլխարկները, ցնծագին ուռռա գոչեցին. դհոլները որոտագին աղմկում էին, երաժիշտները այնպիսի ոգևորությամբ էին փըչում զուռնաները, որ թվում էր, թե հիմա թշերը կտրաքեն: Ծերունիներն ուրախությունից լաց էին լինում. գյուղի երիտասարդները շուրջպար էին բռնել, մենք՝ երեխաներս, բարձրացել էինք ծառերը, որպեսզի մեր տեսադաշտից ոչինչ չվրիպի:

Կեսօրից հետո մարդիկ կամաց-կամաց սկսեցին ցրվել: Մեր գյուղում շատ ազդեցիկ ու շատ հարգված Օհան պապս տուն եկավ, իր հետ բերելով երեք հին ընկերների, երեքն էլ ծերացած, արդեն կորաքամակ, ձեռնափայտերով, փոս ընկած անատամ բերաններով, ճերմակած բեղ ու մորուքով:

Ուրախ ճաշկերույթ եղավ: Գինի խմեցին: Ծերունիներից մեկը՝ Անդրեասը, նույնիսկ մի հին կատակերգ երգեց:

Ճաշից հետո մայրս կարպետ փըռեց մեր հինավուրց ընկուզենու ստվերում և պապս ընկերների հետ նըստեցին այնտեղ: Ծխեցին, ուրցի թեյ խըմեցին ու սկսեցին զրուցել:

Ես սիրում էի լսել ծերունիների զրույցը, դա նման էր խոտերի տակից հոսող առվի քնքեր խոխոջի: Խոսում էին բերքից, եղանակից, ամեն մեկն իր գյուղից, ողջերից, մեռածներից...

Երբ արևը մտավ և տարածվեց ամռան մթնշաղը, հյուրերը պատրաստվեցին վեր կենալ, բայց պապս չթողեց:

— Ծեգին կգնաք,— ասաց նա,— տեղներս նեղ չի, կգրուցենք, ով գիտի մեկ էլ ե՞րբ կհանդիպենք կամ թե չենք հանդիպի:

Գլուխները քարշ արեցին, հավանաբար խորհում էին պապիս խոսքի վրա:

Քիչ հետո դիմացի լեռան ատամնավոր եզրերը լուսավորվեցին, դանդաղորեն դուրս սողաց արծաթե բոլորալուսինը ու շուրջ բոլորն այնպես պայծառացավ, որ ծառերին քնած թռչուններն անհանգստացան և մոտ ու հեռու շներն սկսեցին հաչել:

— Իմացա՞ր, Օհա՛ն,— ծերունիներից մեկը՝ Նազարը, դիմեց պապիս,— որ էս գարունքին Արի-արի Համբոն մեռավ: Հոգին լուսավորվի, խեղճը շատ տանջվեց:

— Իմացա,— ասաց պապս,— ութանասունը վաղուց գլորած կլիներ, ինձնից մի երկու-երեք տարով մեծ էր: Էդ ինչի՞ են նրան Արի-արի Համբո ասում:

— Եսիմ,— ասաց Նազարը,— ջահել ժամանակ են կպցրել, ինքը մեր կողմերից չէր, Սիսիանից էր, ասում են բոշա գրբացներն են սովորեցրել, թե, իբր, բախտին «արի-արի» ասելով պիտի կանչել, դե, օղորմածիկի խելքը մի քիչ էնպես էր:

Անդրեասը հանկարծ փռթկաց.

— Չէ՛ մի, գրբացները:

— Բա ի՞նչ,— հարցրեց պապս:

— Էդ «արի-արի»-ն արջի հետ

կապված պատմություն է, ո՞նց չեք լսել։

Պապս ու Նազարն ուսերը վեր քաշեցին, թե չեն լսել, իսկ Դանիելը, որ մյուսներից ավելի զառամ էր, ինքնամփոփ, մի տեսակ արար աշխարհից խռոված ու դժգոհ՝ քրթմնջաց.

— Ի՞նչ արջ, ի՞նչ բան, անբան մարդիկ են պարապությունից մոգոնել։

Նրան չլսելու տվին, Անդրեասն ասաց.

— Մեր գեղում մի թլվատ դալաք կար, անունը՝ Առուստամ, էդ Առուստամն է ժամանակին ինձ պատմել։

— Որ ի՞նչ,— հարցրին։

Ծերունական ուսերը թրթռացնելով նորից ծիծաղեց Անդրեասը, թևով մաքրեց թրջված աչքերը և այսպես պատմեց.

— Էդ Արի-արի Համբոն իրենից մեծ մի եղբայր է ունեցել անունը՝ Թորոս, որին ժամանակին Թառլան Թորոս են ասել, որովհետև սրտոտ որսորդ է եղել, պարթևահասակ, բեղն ու մորուքն իրար խառնված մի իսկական Ռուստամ Զալ, իսկ եղբայրը՝ Համբոն՝ հեչ բան, չնչին, անանուն ու աննշան մի չոբան։ Մի անգամ էդ Թորոսը մի ահագին արջ է խփում կաղնուտում ու սելին բարձած բերում է գեղամեջ։ Մարդիկ հավաքվում են, բերանները բաց նայում խփված հայվանին ու շատ գովասանական խոսքեր ասում Թորոսին։ Հետո գալիս է ինքը՝ քյոխվան, «աֆերիմ» ասում որսորդին ու մի ջուխտ պլպլան սապոգ նվիրում, հետն էլ, թե՝ «Դու մեր գեղի պարծանքն ես, Թորո՛ս...»

Դանիելը ձեռքը թափ տվեց ու հեգնեց.

— Մի ջուխտ սապոգ, չէ՞ մի, մի ջուխտ էլ Քիրմանի խալի՞...

— Պատմել են, ես էլ լսել եմ,— սրտնեղեց Անդրեասը,— հո ինձանից չե՞մ մոգոնում, ա՞յ մարդ։

— Լա՛վ, խո՛սքդ ասա,— ասացին մյուսները։

— Ի՞նչ էի ասում... հա՛, լուրը թնդում է ողջ գյուղում։ Էդ մեր խեղճ ու կրակ Համբոն մի օր ելնում գնում է եղբոր մոտ, թե՝ էսպես ու էսպես, ա՛յ Թորոս, էդ քո հունարից ի՛նձ էլ սովորեցրու, որ ես էլ կարենամ մարդամեջ ելնեմ։ Որսկանը խնդում է ու ասում, թե ոչ մի հունար էլ չկա, արջ որսալն ավելի հեշտ է, քան ծիտ որսալը։ Համբոն զարմանում է, ո՞նց թե։ Թորոսն էլ էսպես բացատրում է նրան. «Թըվանգը լցնում ես ու գնում մտնում ես կաղնուտ, տեսնում ես արջը ջուխտ թաթերին կանգնած կաղին է ուտում, դու կանգնում ես տեղդ ու ձեն տալիս՝ «արի, արի, արի» ու ձեռքով մոտ կանչում արջին,— և քանի որ արջը մի քիչ խելապակաս կենդանի է՝ սկսում է գալ քո կանչին։ Սպասում ես, մինչև կենդանին մոտ է գալիս ու հասնում քեզնից մի տասը քելքաչափի վրա, տրաքացնում ես փորին ու պրծավ գնաց»։ Էս մեր Համբոն հրացանը վերցնում ու գնում է կաղնուտ, շատ է ման գալիս, թե քիչ, մեկ էլ տեսնում է մի արջ՝ ջուխտ թաթերին կանգնած կաղին է ուտում։ Համբոս ձեն է տալիս, թե՝ «Ա՛յ արջ, արի՛, արի՛, արի՛» և, զարմանք բան, արջը մրթմրթալով սկսում է առաջ գնալ, հենց որ հասնում է մի տասը քելքաչափի վրա, էս մեր ձախորդ Համբոն քաշում է ձգանն ու... փուստ, չի տրաքում, ո՞վ գիտի, հալբաթ բարութը խոնավ է եղել կամ մեկ ուրիշ պատճառ, մինչև փամփուշտը կփոխեր, արջը վրա է գալիս ու Համբոյին կոլոլում տակը, ուզում է քութ-

թա սարքի, բայց, փառքդ շատ, աստված, հրաշք է լինում, Համբոն կարողանում է մի կերպ պոկ գալ ու հայդա, գլխապատառ, արնալվիկ փախչում, տուն է հասնում: Կնիկը վայնասուն է բարձրացնում, դրկից հարևանները վրա են հասնում, լուր են ղրկում Թոռոսին: Գալիս է Թորոսը, թե՝ ա՛յ ախպեր, էդ ո՞նց եղավ: Համբոն շունչը մի կերպ տեղն է բերում ու ախպորը, թե՝ «Ա՛յ Թորոս, էդ քո «արի, արի»-ն իմ տունը քանդեց...» Էդ օրվանից էլ «արի-արին» կպցնում են Համբոյին:

Տերունիների հետ ես էլ ծիծաղեցի, միայն Դանիելը չծիծաղեց, նա իր թաթի նման փոքրիկ ձեռքը նորից թափ տվեց ու ասաց.

— Ո՞նց էլ մոգոնել են:

Պապս ըժգոհեց:

— Ա՛յ Դանիել, երևի մի բան եղել է, որ մարդիկ պատմել են:

Դանիելը չիբուխի գլուխը թխկթըխկացրեց կոշիկի ներբանին, թափեց մոխիրը, նոր ծխախոտ լցրեց, վառեց և միայն նոր ասաց.

— Հեչ բան էլ չի եղել. էդ Համբոն իսկի ախպեր էլ չի ունեցել, Թաղան Թորոսը թայչարուխցի տեր Մարութի առաջին կնկա երեխան է եղել, իսկ Արի-արի Համբոն շամբուտցի դուրգար Օհաննեսի տղան էր, ախպերմախպեր չի եղել, դուրգար Օհաննեսը մի տղա է ունեցել ու վեց աղջիկ, աղջիկներից մեկը, չեմ իմանում մե՞ծը, թե՞ միջնեկը, էն է, կենդանի է, զուր տեղն ինչի՞ եք քամի անում:

Այդ սմբած, վերջացած Դանիելն իրավացի էր, թե չէ՝ չգիտեմ, բայց մյուսների նոթերը կախ ընկան: Մայրս եկավ և նրանց համար ուրցի թեյ ու մոշի մուրաբա բերեց, հետո ինձ ուզեց քնեցնելու տանել, բայց ես կպա պապիս ու չգնացի:

— Խոսքը արջի վրա եկավ՝ Մանգասարին հիշեցի,— խոսեց պապս,— էդ մարդը, քիչ է ասել գելի, կասեմ առյուծի սիրտ ուներ...

— Խոսքդ չմոռանաս, Օհա՛ն,— պապիս ընդհատեց Անդրեասը,— Մանգասարի որդին՝ Անդրանիկն ի՞նչ եղավ:

Պապիս փոխարեն Նազարը պատասխանեց.

— Կա, Անդրոն կա, լսել եմ Ռուսաստանի կողմերն է ապրում, ռսի հետ է պսակվել, մի մեծ ֆաբրիկա է ղեկավարում:

— Անդրանիկին չգիտեմ,— ասաց պապս,— Վարոսին գիտեմ, փոքր տըղին, սահմանապահ օփիցեր է:

— Ո՞վ է ֆաբրիկա ղեկավարում,— հարցրեց Դանիելը:

— Մանգասարի մեծ տղեն՝ Անդրանիկը, Անդրոն:

— Էհե՜յ... ֆաբրիկա՛, չէ՜ մի, վիլայե՞թ է ղեկավարում,— քրթմնջաց Դանիելը:— Էն է Ռոստով քաղաքում մի պուճուր բութկա են տվել, նավթ, մոմ ու մեկ էլ սապոն է վաճառում, Վարոսն էլ օփիցեր չի, դեսյատնիկի նման մի բան է...

Չթողեցին Դանիելին հեռուները գնա, Անդրեասը դարձավ պապիս.

— Խո՛սքդ ասա, Օհա՛ն:

— Ի՞նչ էի ասում,— հարցրեց պապըս:

Նրան հուշեցին.

— Մանգասարը...

— Հա, էդ Մանգասարը Մելիք-Յուզբաշովների մոտ չոբան էր աշխատում, պուճուր Մելիք-Յուզբաշովի: Որքան մեծ եղբայրը թալանչի ու արնախում էր, պուճուրը հակառակն էր, թող լույս իջնի գերեզմանին, մարդամոտ էր, մարդաճանաչ, աղունիկի բարի սիրտ ուներ...

— Լուսը թող քո հոր գերեզմանին իջնի, Օհա՛ն,— նորից մեջ ընկավ Դանիելը,—Մելիք-Յուզբաշովների վրա թող սև քարեկարկուտ թափվի: Ծերացել ես ու հաշիվները խառնել, տո, հեր օրհնած, Յուզբաշովը ո՞ր օրվա մարդամոտն էր, մոռացե՞լ ես էն սև տարվա ձմեռը, որ գեղի կեսը սովից կոտորվեց, մինչ Մելիք-Յուզբաշովների ամբարները հացից տրաքում էին:

Պապս տաքացավ.

— Ես պուճուր Յուզբաշովին եմ ասում, ա՛յ Դանիել, ամբարները մեծ եղբորն էր, հետո, դու որտեղի՞ց ես Յուզբաշովներին ճանաչում, ձեր գեղից հեչ դուրս եկած կա՞ս:

— Ո՞նց թե չկամ, բա խալխին փոստն ո՞վ էր բաժանում՝ դո՞ւ, թե՞ սատանեքը...

Վեճը բորբոքվեց: Ես աչքերս մեկից մյուսին էի հառում ու անհամբեր սպասում, թե երբ կհանդարտվեն, որ պապս առյուծասիրտ Մանգասարի պատմությունն անի:

— Մելիք-Յուզբաշովներին ես էլ եմ հիշում,— մեջ ընկավ Նազարը,— մեծի անունը Մուրադ էր, պուճուրինը՝ Երեմ, Մուրադը Թիֆլիսում մեռավ, իսկ Երեմը՝ կարծեմ, Պետրոգրադում:

Դանիելը կպավ Նազարին.

— Յավաշ, Պետրոգրադում Մուրադը մեռավ, թող գերեզմանը տրաքի, Երեմը պսակվեց թիֆլիսեցի Սմբատ Սուլթանովի աղջկա հետ, գնաց զագրանից ու էնտեղ մեռավ:

— Ո՞ւր գնաց,— հարցրեց Անդրեասը:

— Զագրանից, Փրանգստան, Սուլթանովը հենց դրա համար էլ աղջկան ժառանգությունից զրկեց...

Պապիս թևին հենված թե որքան ննջեցի՝ չգիտեմ, երբ արթնացա՝ զրույցը Մելիք Յուզբաշովներից անցել էր Սուլթանովներին:

Այդպես էլ առյուծասիրտ Մանգասարի պատմությունը պապս չկարողացավ պատմել, քանի որ ծերունիների զրույցն անընդհատ քարկապ էր ընկնում բուն հանգուցակետում և պատմության ծայրը կորչում էր իրար խաչձևող հիշողությունների խրթին ու անվերջանալի ոլորտներում:

Առավոտյան ես արթնացա իմ անկողնում. հավանաբար հայրս կամ մայրս գիշերը եկել և ինձ քնած տարել էին:

Հյուրերն արդեն մեկնել էին, պապս գնացել էր նրանց ճամփու դնելու: Տրխուր էր, երբ վերադարձավ: Թավ, ճերմակ հոնքերը ծանրացել, խոժոռվել էին կոպերին:

— Պա՛պ,— դիմեցի նրան,— Մանգասարի՛ պատմությունը պատմիր:

Պապս հարցրեց.

— Ի՞նչ Մանգասար:

— Առյուծասիրտ Մանգասարը... արջը...

— Հետո, հետո,— դժգոհ փնթփնթաց նա,— ժամանակ ես գտել:

Երևում էր, որ գիշերը հայրս պատըշգամբից լսել էր ծերունիների զրույցը, որովհետև հիմա նա դիմեց պապիս.

— Հայրի՛կ, ինչ դառն մարդ է էդ Դանիել ամին, ոնց էլ դրա հետ զրույցի եք նստում:

Պապս խեթ-խեթ նայեց որդուն և հանկարծ պոռթկաց.

— Էն լեն ու բոլ աշխարհում պուպուի պես մենակ մարդ է, եղած-չեղած երկու սարի պես տղերքը չվերադարձան էս տնավեր պատերազմից, մեկի սև թուղթը եկավ, մեկելը անհետ կորավ: Ի՞նչ է, հիմա ուզում եք, որ էդ մարդը նստի, ձեռքը ականջին դնի ու ձեզ համար բայաթի՞ կանչի, թե՞ վեր կենա «տրնգի» պարի...

# ԱՇՈՒՆ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

Սարի կատարն է անձայն
Եղյամն արծաթում,
Եվ լանջերին դեղնածամ
Հաղարջն է կաթում:
Մռայլ է ձորն ու հեռվում
Ամպեր կան քնած,
Ջագերի հետ իր սիրուն
Ծիծառը գնաց:
Եվ գետակը անտառի
Էլ չի զրնգում,
Տերևահողմն անտառից
Խշշոց է բերում:

# ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ

*ՄԻՔԱՅԵԼ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

Մանկությունը բույր է,
Որ ապրում է
Դաշտերի ու արտերի վրա,
Քամիների մեջ:

Մանկությունը գույն է,
Որ ապրում է
Թիթեռների թևերի վրա
Ու ջրերի մեջ:

Մանկությունը ձայն է,
Որ ապրում է
Աղբյուրների շուրթերի վրա
Ու երգերի մեջ:
Ու մանկություն են երգում
դաշտերը,
Ու մանկություն են երգում
ջրերը,
Ու մանկության գույն են
թիթեռները բերում...

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
*բանասիրության դոկտոր*

## 30. ԻՆՉՔԱՆ ԷԼ ՀԶՈՐ ԼԻՆԻ ՄԱՐԴ՝ «ՍԱՐԻ ՊԵՍ» ԿԼԻՆԻ՞, ԻՆՉՔԱՆ ԷԼ ՓՈՔՐ ԼԻՆԻ ԵՐԵԽԱՆ՝ «ՄԻ ՄԱՏ» ԿԼԻՆԻ՞. ԻՆՉՈ՞Ւ ԵՆՔ ԱՍՈՒՄ ԱՆՀՆԱՐԻՆ ԲԱՆԵՐ ԿԱՄ՝ ՉԱՓԱԶԱՆՑՄԱՆ (ՀԻՊԵՐԲՈԼԱ) ԵՎ ՆՎԱԶԱԲԵՐՄԱՆ (ԼԻՏՈՏԱ) ՄԱՍԻՆ

Սրանք ևս այլաբերության տեսակներ են, խոսքը վառ, ազդու դարձնելու ոճական միջոցներ, և այնքան սովորական, որ դրանց հանդիպում ենք, լսում ու գործի ենք դնում շարունակ:

Օրինակներ՝ ինչքան ուզեք. «Դու ինչի՞ց ես վախենում, ընկերդ սարի պես կանգնած է մեջքիդ», «Ի՞նչ ես ուզում էդ մի մատ երեխայից», «Արցունքը թափվում էր գետի պես», «Մազաչափ հասկացողություն չունի», «Հազար անգամ ասել եմ», «Մի կտոր հացի կարոտ է», «Մատով դիպչես կընկնի» և այլն, և այլն: Այս դարձվածքներն ու նախադասությունները (որոնց թիվը դուք հեշտությամբ կարող եք ավելացնել) մենք ասում ենք առանց վայրկյան իսկ մտածելու, որ ճիշտ չենք ասում՝ դրանք չեն համապատասխանում իրականությանը:

Մենք գիտենք այդ, բայց դա չի խանգարում, որ խոսքի մեջ չափազանց մեծացնենք կամ չափազանց փոքրացնենք, նվազաբերենք կամեցած բանը.

և՛ տարածություն՝ «յոթ սարից, յոթ ծովից այն կողմ», հակառակը՝ «երկու քայլի վրա է»,

և՛ արագություն՝ «սլանում է քամու պես», հակառակը՝ «կրիայի պես է շարժվում»,

և՛ ժամանակ՝ ասում են «մի ժամ է սպասում եմ» նույնիսկ մի քանի րոպե սպասելու դեպքում, հակառակը՝ «այս րոպեիս պատրաստ կլինի», երբ հաստատ գիտեն, որ այդպես չի լինելու,

և՛ քաշ՝ «փղի քաշ ունի», հակառակը՝ «ճանճի քաշ»,

և՛ քանակություն՝ «այնքան մարդ էր լցվել, որ ասեղ գցելու տեղ չկար», երբ դա անհնար բան է, հակառակը՝ «թատրոնում մարդ չկար», երբ ճիշտն այն է, որ քիչ մարդ է եղել,

և այսպես ուրիշ-ուրիշ հասկացություններ, երևույթներ, առարկաներ:

Եթե իրոք այսպես վարվելով մենք «աղավաղում» ենք իրականությունը, հապա ինչո՞ւ ենք լուն ուղտ դարձնում կամ ուղտը՝ լու, ի՞նչն է ստիպում, որ այսպես, «անխիղճ» կերպով մեծացնենք ու փոքրացնենք երևույթները, հեռադիտակի հակառակ ծայրերից նայելու նման:

Ստիպողը մեր հուզական վերաբերմունքն է այս կամ այն մարդու, առարկայի, երևույթի նկատմամբ, իսկ դա կարող է լինել հիացական ու արհամարհական, հաստատական ու ժխտական, հեգնական ու մտերմական և այլն, և այլն: Լեզուն, խոսքը մեր ըզգացմունքների, հուզմունքների, մեր վերաբերմունքի հայելին է նաև ու հայելու պես արտացոլում է մեր վերաբերմունքի չափն ու բնույթը: Ըստ այդ չափի ու բնույթի էլ մենք չափից դուրս վսեմացնում ենք այն, ինչ հրապուրում է մեզ կամ չափից դուրս նը-

սեմացնում այն, ինչ մեզ դուր չի գալիս: Նսեմացնում ենք մեկին, երբ նրան համարում ենք «նապաստակի պես վախկոտ», վսեմացնում ենք, երբ ասում ենք «առյուծի սիրտ ունի»: Ժըխտում ենք ու հեգնում չափազանց թերագնահատելով, հաստատում ու հիանում ենք չափազանց գերագնահատելով:

Ամեն պարագայում չափազանցումն ու նվազաբերումը խոսքին գույն ու հրապույր տվող, խոսքի արտահայտչական հնարավորությունները մեծացնող կարևոր միջոցներ են թե՛ առօրյա խոսքի մեջ, թե՛ գեղարվեստական գրականության: Միջոցները նույնն են, դրանց գործադրման տաղանդն ու վարպետությունն է տարբեր, այնպես, ինչպես նույն երաժշտական գործիքից վարպետ երաժիշտը կարող է դուրս բերել կախարդական հնչյուններ, հըմտություն չունեցողը՝ աստված հեռո՛ւ տանի... Հմուտ երաժիշտը հնչյունների վարպետն է, հմուտ գրողը՝ խոսքի:

Հիշո՞ւմ եք «Անուշի» այն դրվագը, երբ գյուղ է հասնում Սարոյի սպանության բոթը.

Ինչպես մի հեղեղ վեր կենար հանկարծ,
Երկընքի մըթնած ամպերից իջներ,
Ինչպես փոթորիկ սաստիկ սըրընթաց,
Գյուղից սըլացան մի խումբ կըտրիճներ...

Սա, իհարկե, երևույթի չափազանցված, ուժգնացված նկարագրությունն է, ինչպես այս տողերին հաջորդող պատկերը. «Թըշշում է ձորը արյունով լըցված»: Հանճարեղ պատկեր՝ ստեղծված ակներև չափազանցման միջոցով:

Հզոր զգացմունքների վեպ է Աբովյանի «Վերք Հայաստանին», ուստի և հզոր էլ չափազանցումներով է լեցուն: Հիշո՞ւմ եք Երևանի բերդի նկարագրությունը՝ «հազար գլխանի դևի պես», կամ Զանգուն՝ «ինչպես մի կատաղած վիշապ՝ երկնքիցը թռած գլխիվայր» ոչ թե հոսում, այլ վրա է տալիս անանկործան ուժով՝ «ջարդելով, դուս ա պրծնում, վազում ու մռնչալով, քարիքարափի գլուխ վեր հատելով, վեմ-ապառաժ իրար ծեծելով, կայծակին տալով, վառված-կրակված, աչքերը արնով լիքը, դաշտ ու տափ դըրըմբացնելով, դըմբդըմբացնելով, կայծակի թուրը բերնին բռնած, վրա պրծած գալիս ամեհի Զանգին...» Այս հիպերբոլան, որ վիթխարի երևակայության արդյունք է, մեծ էլ նպատակ է հետապնդում. Աբովյանն ուզում է, որ զորեղ, չափազանց զորեղ լինի Զանգուն՝ բռնության խորհրդանիշ «հազար գըլխանի դևի պես» բերդը քանդելու, «մեր անմեղ ազգի աղի արտասունքը» սրբելու համար: Հեղինակն այս և նախորդ չափազանցումներին դիմել է իր հերոսական վեպին լայն թափ, հզոր շեշտեր տալու, պատկերվող երևույթների հանդեպ իր ոգեշունչ վերաբերմունքն արտահայտելու նպատակով և հասել է մի արդյունքի, որ գրական արվեստում հազվադեպ է ձեռք բերվում:

Ե՛վ առօրյա խոսքում, և՛ գրական արվեստում հակառակ դեր է կատարում նվազաբերումը, փոքրացումը (լիտոտան), երբ դիտումնավոր կերպով թերագնահատվում է որևէ անհատի կամ երևույթի նշանակությունը, ուժը, կշիռը, չափը և այդ միջոցով դրանց հանդեպ հանդես է բերվում քամահրական վերաբերմունք: Հողամասի կամ հասակի փոքրությունը շեշտվում է «մի թիզ է», բաժակինը՝ «մատնոցի չափ է», տարածությանը՝ «ձեռքդ մեկնես՝ կըհասնի», քաշինը՝ «փետուրի պես թեթև», խելքինը՝ «ծտի խելք» նվազաբերումներով, և այսպես շարունակ: Դրանք էլ, իրենց հերթին, ինչպես այլաբանության մյուս տեսակները, խոսքը դարձնում են վառ ու պատկերավոր, լայնորեն բացում են դռները «լեզվական երևակայության» առաջ, տալիս են երևույթների հանդեպ մեր վերաբերմունքը, ավելացնենք՝ չափազանցորեն շեշտված վերաբերմունքը ցույց տալու անսպառ հնարավորություններ:

Չափազանցումն ու նվազաբերումը հատուկ են ժողովրդական մտածողությանն առանձնապես: Ահա ինչու դրանք այնքան մեծ տեղ ունեն ժողովրդական վեպերի, հեքիաթների, ժողովրդական բանահյուսության մեջ առ-

հասարակ ու նաև դրանց հիման վրա ստեղծված գեղարվեստական երկերի: Այդպիսի մի փայլուն օրինակ է Հովհ. Թումանյանի «Հսկան», որի վերնագրի տակ հեղինակը նշել է «Կովկասի առասպելներից»: Այստեղ նկարագրվում է մի իշխան,

Մի մեծ իշխան, էնքան ուժեղ,
Որ թե մարդիկ նրա աչքում
Թե հասարակ ճանճ ու մըժեղ:

Եվ ահա նրա մարդիկ սարսափահար պատմում են, թե տեսել են մի հսկայի՝

Մի վիթխարի մարդ եմ ասում,
Որ մենք իր մոտ լու ենք չընչին,
Ծովը մինչև ծունկն է հասնում,
Իսկ գըլուխը ամպի միջին:

Իշխանի զորականներն ապշում են հսկայի մեծության վրա, իսկ սա՝ զորականների փոքրության.

Թե, տեր աստված, արդյոք էսքան
Մանըր-մունըր ի՞նչ բաներ են,
Որ եկել են թափվել վըրեն:

Ինչպիսի՜ վիթխարի, երևակայության մեջ հազիվ տեղավորվող հակադրություն, որ հիշեցնում է Ջոնաթան Սվիֆտի հանճարեղ գիրքը՝ Գուլիվերի արտասովոր ճանապարհորդությունների մասին: Երկու դեպքում էլ գրողները չափազանցման և փոքրացման միջոցներին դիմել են ցույց տալու համար, թե որքան հարաբերական է ամեն ինչ այս աշխարհում: Այդ միջոցները գործի դնելով է Թումանյանն արտահայտել այն մեծ ու ազնիվ ճշմարտությունը.

Թե ուժեղից ուժեղը կա,
Ու չկարծի երբեք ոչ ոք,
Թե ինքն անհաղթ մի բան է ջոկ:

Այս ամենից հետո դժվար չէ հասկանալ, որ չափազանցումն ու նվազաբերումը ոչ առօրյա խոսքում, ոչ էլ գրականության մեջ ուղղակի տրամաբանությամբ, դատողաբար, բառացի չպիտի հասկանալ: Եվ այդպես չի էլ հասկացվում: Երբ դահլիճում քիչ մարդ է լինում և մեկն ասում է «մարդ չկա», մյուսը չի դառնում և ասում, թե «Ինչպե՞ս չկա, այս մի քանիսը մարդ չե՞ն»: Երբ դահլիճը լեփ-լեցուն է լինում և ասում են, թե «ասեղ գցելու տեղ չկա», դրան չեն պատասխանում՝ «Չէ, ասեղի տեղ կա»: Երբ մեկին կշտամբում են, թե «հազար անգամ ասել եմ», սա չի առարկում, թե՝ «Ութ անգամ ես ասել, ինչո՞ւ ճիշտը չես ասում»:

Չափազանցման և նվազաբերման մասին այս զրույցն ավարտելուց առաջ ասենք նաև հետևյալը. բանն այնպես չպիտի հասկանալ, թե մենք որևէ երևույթի նշանակությունը չափազանց մեծացնելով, այսինքն հիպերբոլայի միջոցով անպայման գերագնահատում ենք երևույթը, իսկ փոքրացման միջոցով՝ անպայման թերագնահատում: Այսպես դատելով մենք շատ հասարակ պատկերացում կունենանք խոսքի արտահայտչական հնարավորությունների մասին: Հասարակ և աղքատիկ: Խոսքը, մանավանդ կենդանի՝ բանավոր խոսքը մեզ տալիս է այնպիսի հնարավորություն, որ ասվի մի բան՝ հասկացվի հակառակը, չափազանց գերագնահատող խոսքի տակ ըմբռնվի երևույթի սաստիկ թերագնահատում կամ ընդհակառակը:

Դա ի՞նչ երևույթ է, ինչպե՞ս է կատարվում:

Մեր հաջորդ զրույցը այս հարցի պատասխանը կլինի:

Հոկտեմբերի 29-ը կոմերիտմիության ծննդյան օրն է



# ԱՎԱԳՆԵՐԻ ԿՈՂՔԻՆ

Բարձրաբերձ լեռների երկիր է Կրասնոսելսկը: Ձմռանը նրա բնությունը դաժան է ու անմարդամոտ: Հաճախակի մոլեգնում են փոթորիկները, սարերում ոռնում է բուքը, ձնահոսքերը դեպի ձորերն են քշում հսկայական քարաբեկորներ:

Գարունն այստեղ ուշ է բացվում: Դանդաղ ու անկամ նահանջում է ձմեռը, փայլում է արևը, և աստիճանաբար հողը տաքանում է, կենդանություն առնում: Ծլարձակում են արտերը, փարթամանում են կարտոֆիլի տունկերը, լանջերն ի վար ծփում են ծաղկաբույր խոտհարքները:

Կրասնոսելսկում խոտհնձով են բերքահավաքի սկիզբը դնում: Զրնգում է գերանդին, փռվում են բուրավետ լասերը, հավասար շարքերով ձգվում են մերկացող զուգահեռները:

Շրջկենտրոնի դպրոցականները վաղուց ավագների արժանավոր մրցակիցներն են: Նրանց անվան դիմաց հավաքված ու կուտակված խոտի շատ և շատ տոննաներ են գրանցված: Տնտեսության մարդիկ գոհունակությամբ են խոսում իրենց պատանի օգնականների մասին:

Կրասնոսելսկի ավանի միջնակարգ դպրոցի ԼԿԵՄ կազմակերպության 92 անդամները, ի պատիվ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-ամյակի, շրջկենտրոնի պուրակում տնկել են 110 ծառ և խնամում են դրանք: Մասնակցել են նաև Հայրենական մեծ պատերազմում զոհված համագյուղացիների հուշարձան-կոթողի շրջակայքի ծաղկապատման ու կանաչապատման աշխատանքներին:

Լինելով իրենց հողագործ հայրերի ու մայրերի արժանավոր զավակներ, ամառային արձակուրդների օրերին նրանց հետ միասին մասնակցել են կերի կուտակման, կարտոֆիլի, ծխախոտի, հացահատիկի հավաքման ու ամբարման աշխատանքներին:

Կոմերիտական կազմակերպության քարտուղարը՝ Մարինեն եղել է այս բոլոր աշխատանքների սիրտն ու հոգին, անմիջական մասնակիցն ու ոգեշնչողը: Դպրոցում նա սովորում է գերազանց, տարված է երաժշտությամբ, երազում է մանկաբույժ դառնալ, իսկ այդ ամենից դուրս լավ ընկեր է, նախաձեռնող ու համարձակ: «Ավագների կողքին՝ դաշտում» կոչը ծնունդ է առել այս կազմակերպությունում:

Սարի քամին հնձած խոտի, խնկածաղկի, վայրի մեխակների անուշ բուրմունք էր բերում: Քամին քաշքշում էր տղաների գանգուրները, ալիքվում աղջիկների մազերի մեջ: Նրանք շուրջանակի նստել էին խոտի կիսաչոր լասի վրա, և ռունգերի մեջ խտղտում էր քաղցր ծաղկահամը: Նրանց դիմաց իրիկնային արևով ողողված հովիտներն էին և հորիզոնը հատող լեռները՝ իրենց կանաչ կողերով, ամպածրար գագաթներով, ճերմակին տվող հեղեղատներով: Դաշտերի վրա անծայրանսահման լռություն էր, այնպիսի լռություն, որից խշշում են ականջները: Հետո Մարինեն սկսեց կամացուկ երգել, աղջիկներից Նադեժդա Ժուրավլյովան ձայնակցեց նրան, ապա նրանց միացավ Վերա Մալաշիխինան:

Երբ արևն իջավ ու հովիտը լցվեց թանձր գույներով, նրանք ճանապարհ ընկան դեպի գյուղ: Այնտեղ, բարձր ծառերով շրջանակված պուրակում, նրանց իսկ հիմնադրած բակային ճամբարն էր, որի դրոշակիկները կանչում էին մեղմ ծփանքով:

ՏԱՆՅԱ ԹԱՆԴԻԼՅԱՆ



# Կլիմկո

ԳՐԻԳՈՐ ՏՅՈՒՏՅՈՒՆՆԻԿ

## Գլուխ հինգերորդ

...Առաջին բանը, որ տեսավ Կլիմկոն բացելով աչքերը, հրակարմիր արևի մեծ շրջանն էր (նա, կարծես, լուսավորում էր խավարի միջից)։ Կլիմկոն սկսեց մտաբերել, թե որտեղ է ինքը։ Եվ հիշելով, հարցրեց.

— Մորաքո՛ւյր ջան, մորաքո՛ւյր Մարինա... Էս ի՞նչ է, առավո՞տ, թե՝ իրիկուն։ Որտե՞ղ եք, մորաքո՛ւյր,— հարցրեց այնպես կամաց, որ ինքը հազիվ լսեց իր ձայնը։

— Էստե՛ղ եմ, որդի՛ս, հրես,— մորաքույր Մարինան կռացավ և տաք շուրթերը հպեց նրա ճակատին։— Փա՜ռք քեզ, աստվա՛ծ,— ուրախացավ։— Ճակատդ հովացել է։ Թե չէ էնպե՜ս էր էրվում կրակի նման։ Հիմի առավոտ է, բալա՛ս, արևը նոր ելավ։

— Երկա՞ր եմ քնել, մորաքո՛ւյր,— հարցրեց Կլիմկոն։

— Քնած չէիր, ջերմում էիր։ Երեք օր է ուշքդ վրադ չէր։ Էնպես էիր դողացնում, խե՜ղճ տղա, վեր-վեր էիր անում մահճակալին։ Արդեն չգիտեինք էլ ինչով ծածկենք։ Թունդ մրսել ես...

Կլիմկոն շուռ եկավ ծանր վերմակների տակ և ասաց.

— Պետք է գնամ։

Նա ուզեց բարձրանալ, բայց ո՛չ մեջքը, ո՛չ էլ ձեռքերը չհնազանդվեցին, միայն ուժեղ տաքություն եկավ վրան և ճակատին քրտինք շարվեց։

— Պառկի՛ր, պառկի՛ր,— ետ պահեց նրան մորաքույր Մարինան։— Ո՞ւր պիտի գնաս էդպես հիվանդ-հիվանդ։ Կառողջանաս մի քիչ, հետո կգնաս։ Դու պառկի՛ր, ես գնամ քեզ համար կաթ ճարեմ։ Թե ուտել ուզես, վերցրու կե՛ր, հրես աթոռին եմ դրել։ Մենակ թե, տես, հա՜, վեր չկենաս։

«Երեք օր»... Կլիմկոն զգաց, թե ինչպես մթնեցին աչքերը, այն օրվա պես, երբ ձորակում ծամում էր Բոչոնոկների չորահացերի վերջին փշրանքները, և փակեց աչքերը։

Կլիմկոն երբ բացեց աչքերը, մորաքույր Մարինան տանը չէր։ Նա մեկը մյուսի ետևից վրայից նետեց բոլոր ծածկոցները՝ տաք վերմակը, հնամաշ

¹ Սկիզբը՝ №№ 6—9։

վերարկուն, ինչ-որ բլուզներ, իր բաճկոնը, և բարձրացավ ու ոտքերը իջեցրեց հատակին: Տունը մաքուր էր և պայծառ՝ արևից, պատերի վրայի ասեղնագործ սրբիչներից և պատուհանի գոգի թաղարներում ծաղկող կարմիր բաղրջուկից: Մահճակալի մոտ, աթոռին դրված էր մի կտոր հաց՝ վրան խոզի ճարպ քսած ու գորշ աղ ցանած, և երկու կարմրաթուշ խնձոր: Կլիմկոն դանդաղ, խեղդելով քաղցը, կերավ հացն ու մի խնձորը: «Սա էլ թող մնա,— մտածեց նա մյուսի մասին,— ճամփին հետս կվերցնեմ»: Տեսավ նստարանին խնամքով ծալված իր մաքուր հագուստը՝ մատրոսկան և շալվարը (լվանալուց ավելի էին գունաթափվել, համարյա սպիտակել), վեր կացավ և հագնվեց: Հետո ուսերին գցեց բաճկոնը և դուրս եկավ: Արևը խփեց աչքերին, երկու կաթիլ արցունք վազեց: Կլիմկոն մատներով սրբեց: Օդում տարածվել էր այգիների ծխի բույրը: Այդպիսի բույր լինում էր աշնանն իրենց ավանում:

«Տերևներն են այրում,—մտածեց Կլիմկոն:—Հարկավոր է մորաքրոջ համար մի աշխատանք անել, թե չէ մի գլուխ խոսում էի՝ « Էս կանեմ, էն կանեմ...»

Նա միջանցքում ճարեց մի հին ցախավել, ավլեց տան շեմն ու բակի խոտերի միջով մինչև դռնակ տանող նեղ արահետը. այդպես իրենք ավլում էին դպրոցի բակն ամեն աշնան ու գարնան: Հետո մի պտույտ գործեց տան շուրջը, պոկոտելով պատերի տակի կոշտ մոլախոտերը, և տունն խկույն, կարծես, բարձրացավ: Նայեց շուրջը, տեսնի, թե էլ անելու ի՞նչ կա, և գոմի ետևում նկատեց ծղոտե կտուրով մի ննջուղիկ՝ նույնպես մոլախոտերով ծածկված: Մոտեցավ ննջուղիկին, երկու ձեռքով բռնեց ամենակոշտ ցողունով ճյուղատարած մոլախոտը, որ պոկի և մեկ էլ լսեց ստորգետնյա խուլ «Կո-կո-կո-կո»-ն: Կչկչում էին հավերը, բայց ոչ այնպես զայրացկոտ, ինչպես աքլորները, որ նույնպես գետնի տակ էին: «Ա-ա-ա՜»,—գլխի ընկավ Կլիմկոն ժպտալով և բաց թողնելով մոլախոտը՝ «թող մնան սրանց տակ, ամեն մարդ չէ, որ միանգամից կնկատի ննջուղը»: Նա գնաց տուն, հավաքեց անկողինը և նստեց հանգստանալու, որովհետև հոգնել էր: «Բա ո՞նց գնամ էսպես, որ ավլելուց էլ ուժս հատնում է»,—և իրեն հանգստացրեց նրանով, որ լավ կերավ, դրանից ուժ կգա վրան:

Ծուռով վերադարձավ մորաքույր Մարինան, ուրախ, կարմրաթուշ, աչքերում՝ ծիծաղ: Ձեռքին բռնել էր մի փոքրիկ ծաղկանախշ դեղին պուլիկ, որի պռունկներին սպիտակին էր տալիս կաթի փրփուրե փափախը:

— Վերջը վեր կացա՞ր,—մորաքույրը վեր բարձրացրեց հոնքերը (նա ճանապարհին էլ այդպես էր հոնքերը բարձրացնում, երբ զարմանում էր):— Ա՞յ թե ժիրն ես, հա՜: Ձեր հանքերում, ի՞նչ է, բոլո՞րն են էդպես: Բակն էլ, տեսնում եմ, կարգի ես գցել: Բա կարելի՞ է էդպես հիվանդ-հիվանդ գործի կպչել: Քեզ դեռ հարկավոր է պառկել:

— Ես գնում եմ, մորաքո՛ւյր,— կամաց ասաց Կլիմկոն:— Այսօր: Թե չէ մի օրս էլ կկորչի...

Մորաքույր Մարինան կաթի պուլիկը դրեց նստարանին ու նայեց Կլիմկոյին սկզբում վախեցած, հետո նրա դեմքը խղճալիորեն ծամածռվեց, աչքերը լցվեցին արցունքով.

— Գուցե, որդի՛ս, մո՞տս մնայիր, հը՞,— հարցրեց նա անվստահ:—Մըշտական: Էնտեղ ո՞ւմ մոտ ես գնում: Սա դեռ ես ճամփին էի մտմտում, միանգամից չասացի: Ախր տեսնում եմ հի-

վանդ տղա ես: Ուսուցչուհին երեխի հետ մի կերպ նեղ վիճակից դուրս կգա, մարդկանց մեջ է, էլի: Հագդ-կապդ տեղը կանեմ, ոնց որ պետքն է: Ուտելու բան էլ, փառք քեզ, տեր աստված, կա: Գերմանացիներն էլ մեր կողմերը տարին մեկ հազիվ երևան, ետ ընկած տեղ է սա: Քեռի Պետրոն՝ մարդս, կգա պատերազմից, մահի աչքը հեռու մնա էդ կռզակից, կապրենք երեքով, կլինես ոնց որ մեր հարազատ որդին... Դպրոց կտանք քեզ... Հը՞:— Նրա աչքերում առկայծում էր հույսը և էլի ինչ-որ գործվալից բան, որ Կլիմկոն չէր կարող ըմբռնել: Միայն խղճաց մորաքրոջը և ասաց.

— Ես կգամ, մորաքո՛ւյր Մարինա: Հենց որ մեզ մոտ առվը վերջանա, կգամ, ոտքով լինի թե ինչով: Բայց հիմի ետ պիտի դառնամ, ինձ սպասում են էնտեղ...

Մորաքույր Մարինան հառաչեց, ափով սրբեց աչքերը և ասաց արդեն ուրիշ, հոգատար ձայնով.

— Դե, նստի՛ր, կա՛թ խմիր, ես էլ պաշարդ կապեմ:

Նա բաժակ բերեց ու կաթ լցրեց: Կաթը թանձր էր, տաք ու բուրավետ:

— Մորաքո՛ւյր, լավ կլինի աքաղաղին մորթեք, թե չէ հավերին կմատնի...—ասաց Կլիմկոն:

Մորաքույր Մարինան մեղմորեն ծիծաղեց ու նայեց նրան գործվալի հայացքով.

— Ո՞վ է ախր քեզ էսպես պահեստապահարակել... Ի՞նչ է, լավ՞ում է:

— Մոտիկ գնալիս, լսվում է, բակից՝ չէ:

— Բաց թողած ժամանակ դա ճղղճղղան էր ու կովազան: Կարծում էի նկուղում կհանդարտվի: Ա՛յ, ավազակի մեկը:—Մորաքույրը հոգոց հանեց:— Ես չէի ուզում քեզ առաջուց ասել, կարծում էի, թե կմնաս... Գերմանացիք երեկ մի ապրանքատար գնացք են բաց թողել Դոնբաս, մինչև Յենակիևո թե Հորլիվկա, հաստատ չգիտեմ: Էսօր իրիկուն էլի մեկը գնում է, մեր կայարանից:—(Կլիմկոյի շունչը կըտրըվեց. այնպես էր սեղմվում կուրծքը):—Էն մարդն ինձ ասաց, որից կաթ եմ վերցնում: Նա պատերազմից առաջ ուղեպահ էր աշխատում: Հիմի էլ են քշում աշխատանքի, շատ էլ թե ծեր է: Ասում են. չգնաս՝ կովդ կխլենք: Կարող է օգնի քեզ, հը՞, հետը խոսե՞մ:— Եվ ինքն էլ իրեն պատասխանեց:— Կխոսեմ: Խմիր կաթն ու պառկիր, գոնե մինչև կեսօր քնիր, ավելի լավ կզգաս: Ես գնամ վառարանը վառեմ:

Կլիմկոն մի կում արեց կաթից, էլի մի կում... Բաժակը մեկ երրորդով թերատվեց: Մտածեց, մտածեց ու ջուր ավելացրեց գավաթից, որ սեղանին էր դրված: Հետո վրայից էլի խըմեց ու էլի ջուր ավելացրեց ու էլի... Մինչև մնաց ոչ թե կաթ, այլ կապույտ խառնաջուր:

— Էդ ի՞նչ ես անում,— լսեց նա և բարձրացրեց գլուխը. դռների մեջ կանգնել էր մորաքույր Մարինան:

— Խառնում եմ...— մեղավո՛ր ասաց նա:

— Ջո՞ւր...

Կլիմկոն խոնարհեց հայացքն ու գլխով արեց:

— Մորաքո՛ւյր Մարինա, կարելի՞ է գոնե մի շիշ հետս վերցնեմ, տուն տանեմ,—ասաց կամաց:

— Եփ կտամ ու կտանես: Համարձա՛կ խմիր, ես էլի կճարեմ:— Նա անցավ մյուս սենյակ և այնտեղ բարձրաձայն հոգոց հանեց:

Իսկ Կլիմկոն էլի մի բաժակ կաթ խմեց, արդեն մաքուր կաթ, կամացուկ հանվեց ու պառկեց: Նա նայում էր պատուհանից դուրս ու սպասում կեսօրին, մինչև որ քնեց:

Արդեն գիշերվա դեմ էր: Կայարանում մի կրակ, մի ձայն չկար: Միայն շոգեքարշը, արդեն հնացած, խուպոտ փնչում էր, դժգույն կայծեր նետում դեպի թխպամած երկինք:

«Հնոցը քարածուխ են լցնում,— մըտածեց Կլիմկոն,— թե չէ կայծեր չէին թռչի»: Դրանք խողովակից թռչում են միայն ընթացքի ժամանակ, երբ «խառնում են» հնոցը: Շոգեքարշի խըցիկում այդ միջոցին հանգան հրաշեկ ցոլքերը,— դռները փակվեցին,—բահի շխկոցը դադարեց: Կլիմկոն անհանգըստացավ: Շուտով ուղևորվելու են, իսկ մորաքույր Մարինան գնացել է շրջուղեպահին փնտրելու:

Գնացքի մյուս ծայրից լսվում էր մուրճի բարակ զնգոցը: Այն մոտենում էր: Եվ երբ հավասարվեց պահակատանը, որտեղ նստած էր Կլիմկոն, լսվեց մորաքույր Մարինայի փսփսոցը:

— Բա դատարկ վագոններ կա՞ն, Հնատովիչ:

— Բոլորն էլ դատարկ են,— պատասխանեց խուպոտ ծերունական մի ձայն:— Տա՛ր ուղևորիդ վերջից երկրորդ վագոնը: Էնտեղ արդեն մարդիկ կան: Համ էլ մաքուր է: Փայտ էր բեռնած: Մենակ թե դռները կամաց բաց կանեք:

Կլիմկոն տեսավ շրջուղեպահի փոքրիկ սև ստվերը՝ երկարաքիթ յուղիչը ձեռքին, և նորից մուրճիկը զնգաց անիվներին:

Մոտեցավ մորաքույր Մարինան, նույնպես ստվերի նման դուրս լողալով խավարից, շշնջաց.

— Գնանք, որդի՛ս: Բախտներս բերել է, աստված պահի բարի մարդկանց:

Նա թեթևորեն կապոցն ուսին գըցեց ու բռնեց Կլիմկոյի ձեռքից:

— Էստեղով, կայարանի հետևով գնանք, թե չէ էդ վիժվածքը դուրս կպրծնի... Կայարանի նոր պետ է լույս ընկել:

Նախավերջին վագոնի մոտ նրանք մի քիչ կանգ առան ականջ դրին, հետո մորաքույր Մարինան անաղմուկ թակեց դուռը և կամացուկ ասաց.

— Ջերոնցից ենք, մի՛ վախեցեք...

Դռներն անձայն ետ գնացին, բացվեց սև ճեղքը:

— Օգնե՞մ,— ձայն տվեց ներսից տղամարդու մի ձայն և երկարեց ձեռքը:

Մորաքույր Մարինան տվեց կապոցը, մեղմիկ արտասվեց, համբուրեց Կլիմկոյին, ցողելով նրա այտերը արցունքներով և ջերմ շշնջաց.

— Գնաս բարո՜վ, որդի՛ս, էնպե՜ս էի ուզում մոտս մնայիր, էնպե՜ս սիրեցի քեզ, որ գալիս էինք քաղաքից, որ հիվանդ էիր, սիրտս էլ ուզեիր, կպոկեի կտայի քեզ...

— Ես... Ձեզ չեմ մոռանա, մորաքո՛ւյր Մարինա,— թեկբեկուն ձայնով ասաց Կլիմկոն:— Ես... շնորհակալ եմ ձեզնից... Ես կգամ... Ազնի՞վ խոսք:—

Շոգեքարշը բարակ սուլեց: Մորաքույրը մի անգամ էլ համբուրեց, ինքն իրեն ինչ-որ բան շշնջալով, և գնացքը թափանիվները չխկչխկացնելով շարժվեց:

Վագոնից սռճու հին տաշեղների հոտ էր գալիս, ուղեւլաքների վրա նա օրորվում ու ճռճռում էր, իսկ երբ գընացքը արագություն վերցրեց, վագոնն արդեն չէր ճռճռում, այլ տնքում էր:

Նա, որ Կլիմկոյից կապոցն էր վերցրել, երկար չրթացնում էր լուցկին, և երբ կրակը բռնկվեց, Կլիմկոն անկյունում տեսավ տաշեղների կույտը և դրա տակ՝ հինգ կանանց, ինչ-որ տոպրակներով ու զամբյուղներով: Կանայք նայում էին կրակին փայլուն, համարձակ աչքերով:



«Մերոնք են,— մտածեց Կլիմկոն,— դոնբասցիներ»: Եվ դրանից նա իրեն լավ զգաց, այդ ճռճռան գնացքը տաք ու խաղաղ թվաց:

Իսկ մարդը ծխում էր և ասաց Կլիմկոյին մթության մեջ.

— Վերցրո՛ւ, տակդ տաշե՛ղ փռիր, թե՛ք ընկիր, ճամփին աչքդ կկպցնես:

— Ոչինչ, ես նստած էլ կքնեմ,— աշխուժով ասաց Կլիմկոն:

Գնացքը շարժվում էր, դանդաղ, խարխափելով հաղթահարում գիշերը և բարակ սուլում, չգիտես ինչո՞ւ կամ էլ թե՝ ո՞ւմ համար:

Քեռու «ФД»-ն այդպես չէր գնում: Նա թռչում էր կայարանի մոտով ինչպես փոթորիկ: Եվ Կլիմկոն, լսելով նրա հզոր, դյուցազնական սուլոցը դեռևս լուսազդանշանից հեռու, հազիվ էր հասցնում դուրս թռչել բարաքից, որ ձեռքով անի քեռի Կիրիլոյին և տեսնի, թե ինչպես է նա ժպտում իրեն, ձեռքը թափահարում, իսկ շիկավուն, ալիքավոր մազերը փռփռում են քամուց: Դա ուրախ և իմաստուն շոգեքարշ էր... Նա կարող էր սլանալ ծխի քուլաները կտրիճավարի շպրտելով վագոնի անիվների տակ, կարող էր նաև գաղտագողի, երկար, սև գալարձկան նման աննկատելիորեն գալ դեպի բարաք ու գետնին իջեցնել քեռի Կիրիլոյին՝ մետաղե արկղիկը ձեռքին, հետո խողովակով ուժգին շչալով, ասես քրքջալով, գլորվել ետ՝ կայարան:

Գնացքն ավելի ու ավելի ուժեղ էր ճռճվում, իսկ նավաստու գլխարկի ժապավեններն անվերջ խտղտացնում էին Կլիմկոյի վիզը, այնպե՜ս փափուկ, այնպե՜ս քնքուշ...

Նա արթնացավ դռան ուժգին շրխկոցից: Եվ գորշ անձրևոտ երկնքի ֆոնի վրա իսկույն չէ, որ նկատեց

գերմանացուն վագոնի մեջ։ Նա կանգնել էր գլխաբաց, առանց զենքի, երկար, մինչև արմունկները հասնող կաշվե ձեռնոցներով։ Գերմանացին լապտերը պտտեցրեց բոլոր անկյուններով, լռեց, ոտքերը լայն չռեց, հանգցրեց լապտերը ու հանկարծ ընչաց. ասես կրակեց.

— Հերաո՛ւս։*

Առաջինը դեպի դուռը գնաց այն քեռին, որ շարունակ ծխում էր։ Նրա ձեռքին կար զամբյուղ և ոչ մեծ կապոց։ Գերմանացին սպասում էր՝ հետևելով նրան կենտրոնացած, աչքի տակով։ Երբ քեռին մոտեցավ, գերմանացին ետ տարավ ուսերը, պտտվեց մի ոտքի վրա, իսկ մյուսով ամբողջ թափով հարվածեց ծերունուն ծնկներից վեր։ Քեռին «ախ» արեց ու գլխիվայր ընկավ վագոնից։ Գերմանացին նորից ընդունեց նախկին դիրքը և սպասեց կանանց։ Կլիմկոն փորձեց բացել իր կողքի դուռը, բայց այն տեղից չշարժվեց, երևի անձրևից ուռել էր գիշերվա մեջ։ «Ախ» արեց մի կին, ճչաց մյուսը, երրորդը... Գերմանացին նրանց էլ խփում էր ճիշտ այնպես, ինչպես ծերունուն՝ լուռումունջ, ամբողջ թափով։ Կլիմկոն մեծ դժվարությամբ վեր կացավ և գնաց դեպի դուռը։ Նա նկատել էր, որ գերմանացին խփում է միայն աջ ոտքով և ուզեց դուրս պրծնել նրա ձախ կողմից։ Գերմանացին հետևում էր նրան, Կլիմկոն էլ աչքը չէր հեռացնում նրանից։ Դռներին չըհասած երեք քայլի վրա նա գունդուկուչ եկավ, նույնիսկ կապոցն ուսից ընկավ գլխին, մի քիչ էլ գերմանացուց ձախ գնաց և թռավ վագոնից կապոցի հետ միասին, օդում գլուխկոնծի տվեց և երկաթգծի թեք ու թաց լանջով գլորվելով գլխիվայր ընկավ ջրափոսը, իսկ կապոցը ցավեցնելու չափ ճնշում էր նրա վիզը։ Բայց և այնպես գերմանացին թռիչքի պահին հասցրեց նրա կրծքին... Կլիմկոն փորձեց վեր կենալ, բայց կուրծքը և ծնկները այնպես էին ցավում, որ նա տնքաց, և չորեքթաթ տալով, սողեսող, արմունկները ցեխի մեջ, կապոցը ետևից քարշ տալով դուրս եկավ ջրափոսից։ Առջևի մարդատար գնացքի մոտ կանգնած էր գերմանացիների մի խումբ։ Նրանք ծխում էին և հռհռում։ Երբ նրանց մոտեցավ վագոնից մարդկանց շպրտողը, խումբը շրջապատեց նրան և ավելի ուժեղ հռհռաց։

Ծուռով գնացքը շարժվեց։

Կլիմկոն տրորեց կուրծքն ու ծնկները. լավ է, որ մորաքույր Մարինան շալվար տվեց, թե չէ ոտքերի վրա ողջ տեղ չէր մնա։ Մտածեց, վեր կացավ ու բարձրացավ թմբի գլուխը։ Ոչ հեռվում՝ երեք կիլոմետրի վրա, նա մի կայարան տեսավ և ճանաչեց. Դեբալցևոն էր։

Այժմ նրան մնում էր անցնել մի վաթսուն կիլոմետր։ Նա թեքվեց ակացիայի պուրակից և քիչ հեռվում՝ տափաստանում տեսավ զամբյուղավոր ծերունուն և պարկերը շալակած կանանց։ Նրանք քայլում էին դանդաղ և սաստիկ կուացած։ Կլիմկոն գնաց նրանց ետևից։

Իսկ թաց տափաստանը մեղմորեն շրշում էր քամուց, դառը բուրում էր օշինդրը։ Տափաստանի վրա ցածր կախվել էին ամպերը։

### Գլուխ վեցերորդ

Մյուս օրն արդեն Կլիմկոն մոտեցավ իր կայարանին։ Անձրևից հետո պայծառ հիկնամուտ էր։ Անձրևաշաղը փաղաքուշ փայլում էր ճամփեզրի թոշնած խոտերի վրա, արևը, որ ար-

* Ջըվե՛ք։ (Գերմ.)

դեն հազիվ էր դիպչում ամենահեռու բլրակին, վառ կարմիր հուրհրում էր ցողի ամեն մի կաթիլի մեջ:

Կլիմկոն քայլում էր դանդաղ, ծայրահեղ ուժասպառվել էր շպալի բեռից:

Աղի և ուտեստի պարկը (այնտեղ և կաթի շիշն էր, որ մի հրաշքով չէր ջարդվել, երբ Կլիմկոն ընկել էր վագոնից) նա կապել, երկու մաս էր արել ու տանում էր հերթով մեկ մի, մեկ մյուս ուսին գցած:

Անձրևի ժամանակ կանգ չէր առնում, որ սպասի կտրվելուն, այլ գնում ու գնում էր, քանի դեռ տանում էին ոտքերը:

Դանդաղ էր գնում նաև նրա համար, որ արդեն շտապելու բան չկար. ահա ավանը, երևում է տերևազուրկ պուրակի միջով, ահա և տապալված ջրմուղի մետաղե բաքը ժանգոտած երկաթգծից այն կողմ, համր տերիկոնից տեղ-տեղ ծխի շիթեր են բարձրանում, ապարն է այրվում: Ավանում նույնպես այստեղ-այնտեղ ծխնելույզները են ծխում, և նոսր ծուխը հալվում է պուրակի վրա:

Տանն է, տա՞նը... Արդեն տա՛նն է:

Ավանով չի գնա ինքը, չէ: Գծանցի մոտ ձախ շուռ կգա և գծով, կայարանի, դեպոյի, խանձված բարաքի և հացի փուռի մոտով կհասնի կշռանոց: Մեղմիկ կթակի դուռը... «Ո՞վ է,—կըհարցնի Նատալյա Միկոլաևնան:—Մըտեք, խնդրեմ»... Կլիմկոն ժպտաց և ինքն էլ այդ չզգալով, արագացրեց քայլերը:

Հանկարծ ավանում խուլ ճայթեց կրակոցը: Հետո կարճ ճարճատեց ավտոմատը: «Նորի՞ց իտալացիներ, ի՞նչ է»,—մտածեց Կլիմկոն:

Նրանք այն ժամանակ էլ երբ եկել



էին, մի այնպիսի հրաձգություն էին բացել հավերի վրա, ասես ավանում կռիվ էր գնում: Լավ, էլ ո՞րտեղից հիմի հավեր, երբ դրանց վերջը տվին արդեն:

Նորից թրխկաց կրակոցը, արդեն մոտիկից, գնդակը սուլեց ինչ-որ տեղ վերևում:

Եվ այդտեղ Կլիմկոն տեսավ, որ գծանցից իրեն դեմ-հանդիման վազում է մի մարդ՝ բոբիկ, զինվորական քրղարձակ գալիֆեով և գիմնաստյորկայով՝ առանց գոտու:

Նա վազում էր ու շարունակ շուրջը նայում: Գծանցում հայտնվեցին էլի երկուսը սև համազգեստով:

Նրանցից մեկը ծնկեց ու կրակեց: Մարդը, որ վազում էր, մի կողմ ցատկեց:

Եվ այդ միջոցին Կլիմկոն ամեն ինչ հասկացավ:

— Ընտե՛ղ, քեռի՛, վազե՛ք,— բղավեց նա ձեռքով իրենից աջ ցույց տալով:— Ընտե՛ղ: Ընտեղ ձո՛ր է...

Գծանցից խփեց երկար ավտոմատային կրակահերթը: Մի բան հրեց Կլիմկոյի կուրծքը և այրեց այնպես ցավոտ, սուր, որ աչքերի դեմ հրակարմիր բծեր լողացին:

Նա կրծքի մոտ ձեռքն ամուր սեղմեց բանկոնին, կամաց «օ՜յ» արեց ու ընկավ:

Ծակված պարկից բարակ, սպիտակ շիթով հոսում էր աղը ճանապարհի վրա:

— Կլիմկա-ա-ա՜, Կլիի-մկա՜-ա՜,— լսեց Կլիմկոն թեժ խավարից ու այլևս ոչինչ չլսեց:

Գծանցից ձեռքերը բարձրացնելով, սայթաքելով ու ընկնելով դեպի Կլիմկոն էր վազում Զուլֆատը:

Ուկր. թարգմ. ՌԱԻՍԱ ՂԱՐԱԳՅՈԶՅԱՆԻ

**Վ Ե Ր Ջ**

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ*






# ԱՌՅՈՒԾԻ ԽԵԼՔԸ, ՆԱՊԱՍՏԱԿԻ ԵՐԳԸ



*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*



Առյուծ արքան մի սազ էր նվիրել Նապաստակին:

Օրերից մի օր, երբ կենդանիները բացատում ա՛րևկո՛ղ արած լսում էին օձի զրույցը առյուծի ուժի ու խելքի մասին, գալիս է Նապաստակը, նվագում սազը, հետն էլ պարում ու երգում.

Ես նապաստակ եմ,
Քաջի զավակ եմ,
Առյուծն՝ ինձ ընկեր,
Ես՝ ծառա, նա՝ տեր,
Ով ինձ ծուռ նայի,
Ոչինչ չի շահի:

Օձը ընդհատում է իր զրույցը: Աղվես քույրիկը՝ Խորամանկիկը, մոտենում է Նապաստակին.

— Ինչպե՞ս ես համարձակվում նվագել, եր-

խանգարել, գնանք ցույց տամ քեզ իմ ուժը:

— Գնանք,— ասում է աղվես քույրիկը՝ Խորամանկիկը:

Նապաստակը տանում է նրան թփուտից այն կողմ ու անցած-չանցած մի կարճ ժամանակ, ետ է գալիս, բոլորի առջև փռում է աղվեսի թարմ մորթին ու սազին տալով պարում, երգում.

Ես նապաստակ եմ,
Քաջի զավակ եմ,
Առյուծն՝ ինձ ընկեր,
Ես՝ ծառա, նա՝ տեր,
Ով ինձ ծուռ նայի,
Ոչինչ չի շահի:

Նապաստակին է մոտենում գայլը՝ Արագաքայլը:

ճակվում երգել ու պարել, առյուծ արքայի քունը խանգարել, գնանք ցույց տամ քեզ իմ ուժը:

— Գնանք,— ասում է գայլը՝ Արագաքայլը:

Նապաստակը տանում է նրան ու անցած-չանցած մի կարճ ժամանակ, ետ է գալիս, բոլորի առջև փռում գայլի թարմ մորթին ու սազին տալով պարում, երգում.

Ես նապաստակ եմ,
Քաջի զավակ եմ,
Առյուծն՝ ինձ ընկեր,
Ես՝ ծառա, նա՝ տեր,
Ով ինձ ծուռ նայի,
Ոչինչ չի շահի:

Նապաստակին է մոտենում արջուկ-Փար-

գարել, գնանք ցույց տամ քեզ իմ ուժը:

— Գնանք,— ասում է արջուկ-Փարչուկը:

Նապաստակը տանում է նրան թփուտներից այն կողմը, ու անցած-չանցած մի կարճ ժամանակ, ետ է գալիս, բոլորի առջև փռում արջուկի թարմ մորթին:

Կենդանիները զարմանք կտրած հարցնում են Նապաստակին.

— Ո՞ւր են մեր ընկերները՝ աղվես քույրիկ-Խորամանկիկը, գայլ-Արագաքայլը, արջուկ-Փարչուկը:

— Հարցրեք առյուծ արքայի՛ն,— պատասխանում է Նապաստակը:

Այստեղ լսվում է առ-



որ բացատին մոտիկ քա-
րայրում քնած է առյուծ արքան: Իմացա՞ծ եղիր՝

Հազար վա՜յ նրան,
Ով երգի, պարի,
Առյուծ արքայի
Քունը խանգարի...

Նապաստակը պատասխանում է.

— Որ համոզվես, թե ինչպես եմ ես համարձակվում երգել ու պարել, առյուծ արքայի քունը ձակվում երգել ու պարել: Չգիտե՞ս, որ բացատին մոտիկ քարայրում քնած է առյուծ արքան: Իմացած եղիր՝

Հազար վա՜յ նրան,
Ով երգի, պարի,
Առյուծ արքայի
Քունը խանգարի...

Նապաստակը պատասխանում է.

— Որ համոզվես, թե ինչպես եմ համարձակվում երգել ու պարել: Չգիտե՞ս, որ բացատին մոտիկ քարայրում քնած է առյուծ արքան: Իմացած եղիր՝

Հազար վա՜յ նրան,
Ով երգի, պարի,
Առյուծ արքայի
Քունը խանգարի...

— Որ համոզվես, թե ինչպես եմ համարձակվում երգել ու պարել, առյուծ արքայի քունը խան-

յուծի ձայնը քարայրից.

— Էլ ո՞վ է ուզում, որ նապաստակը ցույց տա իր ուժը, երգի իր երգը:

Օձը, որ կենդանիների մեջ ամենաիմաստունն էր, պատասխանում է.

— Ոչ թե նապաստակի երգը, այլ՝ առյուծի խելքը հաղթեց:

— Հապա՜, — ծպտաց նապաստակը ու սազին տալով, երգելով ու պարելով հեռացավ:

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ





# ԵՐԲ ՎԵՐՋԱՆՈՒՄ Է ԽՈՍՔԸ, ՍԿՍՎՈՒՄ Է ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ

ՍՎԵՏԼԱՆԱ ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ

## 2. Մի կյանքով հազարն ապրելու հնարավորություն

Մարդը միշտ պաշտել է բարին, գեղեցիկը: Թերևս հենց դրանից էլ ծնվել են արվեստները, այդ թվում և դասական արվեստը, որն ի վիճակի է վերհանել մարդու մեջ թաքնված հոգևոր հըսկայական պաշարը և նըպաստել նրա ինքնաճանաչմանն ու ինքնահաստատմանը: Հռչակավոր ֆիզիկոս Ալբերտ Էյնշտեյնը նաև ջութակահար էր: Նրա համար չկար ավելի մեծ բերկրանք, քան ազատ ժամերին երաժշտական համագործակցությունն իր ո՛չ պակաս նշանավոր ընկերների՝ Մաքս Բոռնի, Մաքս Պլանկի հետ: Գեղանկարչության մեծ սիրահար է սովետական ականավոր բժիշկ Բլոխինը, որ գեղարվեստական կտավների ընտիր հավաքածու ունի: Իմ գրադարանի հպարտությունն են կազմում երկու գիրք երաժշտության վերաբերյալ, գրված ո՛չ երաժիշտների կողմից, բայց խորապես երաժըշտական: Մեկը Ռուսաստանի արտաքին գործերի առաջին ժողկոմ Չիչերինի գիրքն է Մոցարտին նվիրված, մյուսը՝ մեր դարի 20-ական թըվականների Ֆրանսիայի վարչապետ Էրիոյի «Բեթհովենի կյանքը» մենագրությունը: Կարելի է շարունակել թվարկումը, հիշատակելով նաև Վիկտոր Համբարձումյանին, Ալիխանյան, Օրբելի եղբայրներին, ուրիշ շատշատերի, որոնք անվերապահ նվիրված լինելով սեփական գործին, ոչ միայն հեռու չեն արվեստից, այլև ընդունել են այն իբրև կենսական անհրաժեշտություն: Բանաստեղծական անհաշիվ անակնկալներով է լի մեզ շրջապատող բնությունը: Հուզմունքի հազվագյուտ պահեր են ծնում լուսնի անդրադարձումն ու վաղորդյան ցողը՝ գարնան կանաչին, անտառում բացված արահետն ու դաշտի միայնակ կակաչը... Բնության ամենամեծ հրաշքը սակայն մարդն է: Մեր կողքին է նա, հաճախ մեզնից աննկատ: Կարողություն է պետք նրան ճանաչելու համար: Այդ կարողությունն էլ տնօրինում է արվեստը: Ես միտումնավոր չեմ կամենում անջատել երաժըշտությունը հարակից արվեստներից: Ինձ համար թանկ են հատկապես թատրոնն ու գրականությունը, կինոն ու գեղանկարչությունը: Նույնն է նրանց նպատակը, նույնը՝

հետաքրքրություններ ի շրջանակը: Տարբեր են միայն արտահայտչամիջոցները: Բայց նրանք լրացնում, հաստատում են միմյանց: Արվեստների դաշինքի վառ արտահայտումներն են օպերան, բալետը, կինոն, թատրոնը: Գույնը, որի գեղագիտական հատկությունը հայտնաբերվեց նաև երաժշտության մեջ: «Քայլեր ձյան վրա», «Լուսնի լույսը», «Նավակը օվկիանոսում», «Ջրի խաղը», «Թախծոտ թռչուններ», «Հրավառություն»—այսպիսի անվանումներ ունեն ֆրանսիացի կոմպոզիտորներ Ռավելի ու Դեբյուսիի գործերը: Շատերին է ծանոթ «Ճարտարապետությունը նույն ինքը երաժշտությունն է քարացած» դարձվածքը, մյուս կողմից ասորական հին տաճարների հետ են համեմատվում Բախի երաժշտական կուռ կառուցվածքները:

Եկեք թերթենք դասական երաժշտության էջերը, ուր միահյուսված են խոր փիլիսոփայականն ու նուրբ քնարականը, ողբերգականն ու կոմիկականը, իրականն ու երևակայականը...

«Ճակատագիրն է բախում դուռը»—այսպես է բնութագրված Բեթհովենի 5-րդ սիմֆոնիայի ըսկիզբը, որն արտահայտում է մարդու մենամարտը ճակատագրի հետ: Հաղթանակում է մարդը—Բեթհովենի համար շատ թանկ մի գաղափար, որ հաստատել է սեփական կյանքի օրինակով՝ կոմպոզիտորը բոլորովին խլացած վիճակում է ստեղծել իր լավագույն գործերը: Պատերազմի տարիներին պաշարված Լենինգրադում՝ սովի, սառնամանիքի, մահի մոլեգնման պայմաններում է ստեղծվել Դմիտրի Շոստակովիչի «Լենինգրադյան սիմֆոնիան»:

Երբ 1699 թ. Իտալիայում Բարտոլոմեո Քրիստոֆորին ստեղծեց բոլորիս ծանոթ դաշնամուրը, ո՞վ կարող էր երևակայել, որ այդչափ գեղեցիկ գործեր կգրվեն այդ գործիքի համար, և 19-րդ դարում կծնվի մի կոմպոզիտոր, որին հետագայում «դաշնամուրի բանաստեղծ» կանվանեն: Եվ իրոք, բանաստեղծականությամբ է լի Շոպենյան երաժշտության աշխարհը, լի է անասելի գեղեցկությամբ, որի առջև խոնարհվում է ժամանակը... Շեքսպիրի «Ռոմեո և Ջուլիետի» հավերժական սիրո գաղափարը իր երաժշտական, թերևս համարժեք մարմնավորումը գտավ Պրոկոֆևի համանուն բալետում, որը



20-րդ դարի երաժշտության աչքի ընկնող նվաճումներից է: Ջուլիետի կերպարն էլ կապվեց Գալինա Ուլանովայի հետ, որի բացառիկ արվեստը պարարվեստի պատմության անջնջելի էջերից է: Հերոսականը, էպիկականը նույնպես խորթ չեն բալետային լեզվին, եթե հիշելու լինենք Ա. Խաչատրյանի «Սպարտակը», Է. Հովհաննիսյանի «Սասունցի Դավիթը» և այլն:

Չայկովսկու «Կարապի լճի» հուզաթաթավ երաժշտությունը մոռանալ է տալիս մեզ բալետի հեքիաթային սյուժեն, ստիպում վերապրել իրական զգացումներ: Նույն կոմպոզիտորի գրչին են պատկանում «Եվգենի Օնեգին», «Պիկովայա դամա» օպերաները՝ ըստ Պուշկինի համանուն գործերի: Բանաստեղծու-

թյունն ու երաժշտությունն այստեղ այնպես են ձուլվել, որ դժվար է անջատել կոմպոզիտորին բանաստեղծից, բանաստեղծական տողերն էլ երաժշտությունից:

Ռուսական հեքիաթներից, առասպելներից մեզ հայտնի «Սադկոն», «Ձյունանուշիկը», «Սալթան թագավորը»—կոմպոզիտոր Ռիմսկի-Կորսակովի հերոսներն են: Հանրածանոթ «Բոռի թըռիչքը» գործիքային հատվածը «Հեքիաթ Սալթան թագավորի մասին» օպերայից է: Վերջին տարիներին մեր օպերային թատրոնի ազդագրերում երևացին «Գիքորը», «Լոռեցի Սաքոն», «Ախթամարը» և այլն: Բազ-



միցս առիթ ենք ունենում կիսելու օտարերկրացիների հիացմունքը հայկական դասական արվեստի, մասնավորապես երաժշտության նկատմամբ, որ պայմանավորված է Տ. Չուխաջյանի, Կոմիտասի, Սպենդիարյանի, Ա. Տիգրանյանի, Ռ. Մելիքյանի, Ա. Խաչատրյանի, Ա. Բաբաջանյանի, Է. Հովհաննիսյանի, Տ. Մանսուրյանի ստեղծագործական ժառանգությամբ:

Այսօր մենք ունենք համաշխարհային դասականների ազգային կատարողական դպրոց, որի սաները հաղթանակում են միջազգային մրցույթներում, համբավավոր երգչախումբ ունենք, օպերա, բալետ, երկու սիմֆոնիկ նվագախումբ... Որքա՜ն կուրախանային այս ամենը այն մարդկանց, ովքեր դարասկզբին մտահոգված էին Հայաստանի երաժշտական ճակատագրով: 1968 թ. երջանիկ անակնկալ էր ինձ համար հանդիպումը Լայպցիգում հայ ժողովրդական երգերին նվիրված Կոմիտասի դասախոսությունների գրառումներին: Խունացած թուղթը հավատարմորեն պահպանել էր Կոմիտասի ձեռագիրը, անհուն հայրենասերի, որի անունն է կրում Երևանի պետական կոնսերվատորիան, նորաբաց կամերային երաժշտության տունը: Գրում եմ ու մտածում, որքա՜ն լավ կլիներ հանդիպել ձեզ, սիրելի բարեկամներ այդ սրահում, ուր հնչում է երգեհոնը (թվով չորրորդը Հայաստանում), հանդիպել ձեզ սիմֆոնիկ կամերային համերգներում, թանգարաններում, թատրոններում: Գեղեցիկին հաղորդակցվելու բազմաթիվ հնարավորություններ են ստեղծված ձեզ համար: Հայֆիլհարմոնիային կից գործում է դպրոցական ֆիլհարմոնիան, շուտով կբացվի մանկական գեղագիտական դաստիարակության հանրապետական կենտրոնը: Հազարավոր ձայնապընակներ են արտադրվում դասական երաժշտությամբ, հաղորդումներ կազմակերպվում ռադիոյով ու հեռուստատեսությամբ:

Մի՛ կորցրեք գեղեցիկին հաղորդակցվելու հնարավորությունը, հակառակ դեպքում մեկ կյանքի ընթացքում հազար կյանք ապրելու հնարավորություն եք կորցնում, աշխարհ եք կորցնում ձեր մեջ՝ այդպես էլ չհայտնաբերված:



# Գո՞ղ էինք, թե՞ գող չէինք

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Ալեքսանենց Հովհաննեսը շատ ժլատ մարդ էր: Դրա համար էլ կլոր տարին միայն նա էր մեղր ունենում: Չէ՛ր վաճառում, ոչ մեկին չէր հյուրասիրում, նույնիսկ ափսոսում էր ուտել: Եվ ոչ ոք չգիտեր, թե ուր է գնում նրա տասը փեթակների մեղրը: Երբ ձմռանը մեկնումեկը հիվանդանում էր, սիրտը մեղր էր ուզում, Հովհաննեսին չէին դիմում, գնում էին հարևան գյուղերը: Ասում էին. «Հովհաննեսը ձմեռը ձյուն էլ չի տա»:

Այդ տարի էլ Տերտերանց Համբարձումը հիվանդացավ՝ մի խեղճ ու մեղք մարդ: Ծննդյան տոներից անմիջապես հետո էր, բոլորը ծախսել էին իրենց յուղի ու քաղցրեղենի հոգեպահուստները: Բժիշկն ասել էր, որ նա պետք է ընկույզով մեղր ուտի: Պատերազմի տարիներին մարդիկ այնքան էին

քաղց տեսել, որ նույնիսկ բժիշկները, ցանկացած հիվանդության դեպքում, ասում էին ուժեղ սնունդ է հարկավոր:

Եկել էին Ալեքսանենց Հովհաննեսի տուն, հրաժարվել էր, ասելով, թե մեղրը վերջացել է: Եվ խեղճ Համբարձումը մեռնում էր, իսկ բոլորը հաստատ գիտեին, որ Հովհաննեսի նկուղում շարված պուլիկները լիքն են մեղրով:

— Ունի ու չի տալիս,— ասաց մորեղբայրս,— դա արդարություն չէ:

— Պա՛հ, պա՛հ, պա՛հ,— քմծիծաղ տվեց պապս, ձեռքերը դեմ անելով տաք վառարանին,— արդարությո՞ւն է պահանջում:

— Լավ է մարդու աչքը դուրս գա, քան թե անունը,— ասաց տատս,— խեղճը երևի չունի էլ, հենց էնպես խոսում են...

— Տասը փեթակի մեղրը կերա՞ն մի քանի ամսում,— տրտնջաց մորեղբայրս,— երեք հոգի են եղած-չեղածները:

— Քեզ չի վերաբերվում,— բարկացավ պապս,— փաստաբանություն մի՛ անի: Ավելի լավ է գնացեք քնեցե՛ք, որ առավոտը կարողանաք վեր կենալ:

Սուսուփուս անցանք մեր սենյակը:

— Հրա՛նտ,— փսփսաց մորեղբայրս,— խոր չքնես, գնալու ենք մեղրի:

— Ի՞նչ մեղր...

— Ալեքսանենց Հովհաննեսի:

— Ո՞նց թե...

— Մեղրն այնտեղ պահպհորած է, իսկ մարդուն միայն մեղրը կբուժի:

— Բա շո՞ւնը...— վախեցա ես:

— Քնի՛ր, ես կարթնացնեմ,— ասաց մորեղբայրս ու փաթաթվելով վերմակի մեջ, խռմփացրեց:

Գիշերվա կեսին դուրս եկանք: Մինչև վերջ էլ կարծում էի, թե կատակում է: Բայց, երբ մոտեցանք Ալեքսանենց Հովհաննեսի տանը, սիրտս դող ընկավ, սկսեցի ցրտից սրթսրթալ: Շունը գռմռալով մոտ վազեց: Մորեղբայրս ծոցից մի հաց հանեց, սկսեց պատառ-պատառ գցել շան առաջը:

— Նկուղի պատուհանից կմտնես, պուլիկները մեկ-մեկ կբացես, կփորձես, որի մեջ մեղր կլինի, պատուհանից դուրս կդնես:

Ես լուռ ու գլխահակ կանգնել էի:

— Վախենո՞ւմ ես...— փսփսաց մորեղբայրս:

— Հա,— ասացի ես:

— Մի՛ վախենա, ես քեզ հետ եմ...— ձեռքս սեղմեց մորեղբայրս, և ես ինքնաբերաբար առաջ շարժվեցի: Պատուհանի անցքով հազիվ մի կատու կանցներ: Մի կերպ ներս սողացի: Մթության մեջ ոչինչ չէր երևում: Շոշափելով ինչ-որ ամաններ գտա: Բոլորը դատարկ էին: Խարխափելով մոտեցա պահարանին: Մեղրն այնտեղ էր: Մատս մտցրի մեջը, լիզեցի: Աշխարհի ամենահամով բանն էր՝ վաղուց չէի կերել:

— Հրա՛նտ...— պատուհանից լսեցի մորեղբորս փսփսոցը:

Զգուշությամբ առաջ եկա, մեկնեցի ծանր, կավե պուլիկը:

— Մի լավ կուտենք,— շուրթերս լիզելով ասացի ես,— էլի կա:

— Էլ պետք չի,— փսփսաց մորեղբայրս,— դո՛ւրս արի:

Գնացինք դեպի Համբարձումի տուն:

— Էս ո՞ւր...— հիասթափված հարցրի ես,— արդեն գլխի ընկնելով:

— Մարդը հիվանդ մեռնում է,— ժպտաց մորեղբայրս:

— Էլի կար...

— Պետք չի... Մենք գողեր չենք...

— Իբր թե չգողացա՞նք...— պապիս նման քմծիծաղ տվեցի:

— Սա գողություն չի:

— Բա ի՞նչ է:

— Չգիտեմ... Գողություն չի...

Մտանք Տերտերանց բակը:

— Գոնե մի անգամ մատներս թաթախեինք:

— Մի անգամ կարելի է,— ժպտաց մորեղբայրս:

Լուսնյակի լույսի տակ նայում էինք միմյանց ու ծիծաղում:

— Դու մի՛ անգամ էլ թաթախիր,— ասաց մորեղբայրս:

— Մեղրից համեղ բան չկա,— ասացի ես:

Եվ մենք ծիծաղելով տուն վերադարձանք:

Առավոտյան ողջ գյուղով մեկ տարածվեց մեղրի գողության լուրը: Բոլորը պատմում էին, մեկմեկու այնքան պատմեցին ու վերջում այնպես աղավաղեցին ամեն ինչ, որ նույնիսկ մենք կարգին գլուխ չէինք հանում:

Իսկ երեկոյան, երբ նստոտել էինք վառարանի կողքին, պապս ոչ մի կերպ չկարողանալով կռահել մեր անտեղի ու անհամ ծիծաղի պատճառը, նեղացած ասաց.

— Տղամարդ նրան եմ ասել, ով Հովհաննեսի մեղրի պուլիկը հացրել է հիվանդին... Իսկ դուք մի գլուխ քուռակների նման խրխնջում եք... Գնացեք քնե՛ք...

— Գողին ես տղամարդ ասո՞ւմ, պա՛պ:

— Բա դա գողությո՞ւն էր:

— Գողությո՞ւն էր, թե՞ գողություն չէր,— հարցրինք մենք:

Պապս լռեց: Մտածում էր:

# ՍՏԱ-ԽՈՍ ՉԵՄ, ՇԱ-ՏԱ-ԽՈՍ ՉԵՄ



ԿԻՄ ՍԱՐԱՆՉԻՆ

Ստախոս չեմ, շատախոս չեմ,
Կերդվեմ՝ ինչով որ կուզես,
Բեր ականջդ՝ մտերմորեն
Նորություններ հայտնեմ քեզ:
Ինձ շատերը վատն են կարծում,
Բայց բոլորից լավն եմ ես,
Արի պատմեմ ազնվաբար
Ե՛վ իմ մասին, և՛ իրենց:
Ակտիվիստ էլ ես կլինեմ,
Գործերն ինձ են սպասում,
Դերասան էլ՝ տաղանդավոր,
Բայց դեր խաղալ չեմ ուզում:
Աղջիկներն ինձ նախանձում են,
Ջիրքեր ունեմ մարզական,
Մրցումներին թե մասնակցեմ,
Չեմպիոնուհի կդառնամ:
Ո՞վ չգիտի՝ ես մեր բակում
Գեղեցիկ եմ բոլորից,
Արտաքինով չեմ տարբերվում
Հայտնի Սոֆի Լորենից...
Իմ անունը շատ մեծերի
Անվան կողքին կդասեն,
Ինձ չաչանակ մի՛ անվանիր,
Մի՛ խանգարիր, որ ասեմ՝
Թե ես որքան ընդունակ եմ
Ե՛վ ուսման մեջ, և՛ գործում,
Բայց տես ինչպե՞ս են ինձանից
Երես թեքել դպրոցում:

Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

# ՊՈՉՈՎ ՍՈՒՏ

(Հայ ժող. հեքիաթ)



Մի գյուղում կար մի հավ: Հավ մի ասի՝ մի կրակ ու պատիժ ասա: Սրա կողքով անցնել չէր լինում, վրա էր թռչում՝ կտցահարում աչք ու երես, ճանկերով ճանկռոտում, մարդու շորերը վրան քրքրում:

Գյուղովի շատ որ բողոքեցին հավատիրոջը, սա ճարը կտրած, բռնեց հավին՝ գցեց մարագը, դուռ-կտուր լավ փակեց, ո՛չ ջուր տվեց, ո՛չ կուտ:

Փակեց ու մոռացավ:

Անցավ մի ամիս, երկու ամիս, մի տարի: Մի օր էլ հիշեց, ասաց՝ գնամ մարագի դուռը բաց անեմ, էդ անտերը սատկած ու հոտած կլինի, դուրս գցեմ մարագից, գարշահոտությունից մարագս մաքրեմ: Գնաց բացեց մարագի դուռն ու ի՜նչ տեսավ, մարագը լիքը ձու:

— Կնի՛կ, — ասավ, — սայլը լծեմ, էս ձուն լցնենք մեջը, շուկա տանենք, ծախենք:

Սայլը բերեց, ձուն սայլը լցնելիս մեկն ընկավ գետին կոտրվեց, միջից դուրս եկավ մի սագի ճուտ ու փախավ:

— Կնի՛կ, — ասավ, — դու մնացած ձվերը լցրու սայլը, ես սրան բռնեմ...

Ընկավ ճուտի ետևից... Սա վազում էր, ճուտը վազում էր՝ հետն էլ մեծանում: Տերը հասավ նրան այն ժամանակ, որ ճուտն արդեն մի ուղտի չափ դառած, մտել էր մի բոստանչու բոստան, էս անխիղճ բոստանչին էլ ինչքան ձմերուկ էր քաղել, լցրել պարկերը, շտապ-շտապ բեռնում էր սրան, որ շուկա տաներ:

Սագի տերն ստիպեց բոստանչուն բեռներն իջեցնել, նայեց ու տեսավ սագի մեջքը հարվել, պըլոկվել է, որտեղից որտեղ ձմերուկի մի կորիզ է ընկել վերքի մեջ ու մի ձմերուկ է բուսել, ի՜նչ ձմերուկ... Էս անտեր մընացած ձմերուկը, նրանց աչքի առաջ, դեռ մեծանում էր հա մեծանում:

Սագը, երևի մեջքի ցավից, դուրս պրծավ տիրոջ ձեռի տակից, փախավ: Տերն ընկավ ետևը, քափ ու քրտինքի մեջ, մի չոլում, մի կերպ հասավ ետևից, հանեց դանակը, խրեց ձմերուկի մեջ, որ կտրի, դանակը ձեռից պլստաց, ընկավ ձմերուկի մեջ կորավ: Տերը դանակի ետևից ինքն էլ ներս գնաց, ու դես դանակ, դեն դանակ, դանակը չկար: Դեմը ելավ յափունջին ուսերին, փափախը գլխին, չոմբախը ձեռին մի չոբան:

— Չոբա՜ն ախպեր, չոբա՜ն ախպեր,— ասաց գյուղացին,— դանակս էս ձմերուկի մեջ ընկավ՝ կորավ, ման եմ գալիս, չեմ գտնում, դանակս չե՞ս տեսել:

— Վա՜հ քո տունը շինվի,— ասաց չոբանը,— իմ ոչխարի ամբողջ հոտն է ընկել էս ձմերուկի մեջ, կորել, ման եմ գալիս, չեմ գտնում, էստեղ դանակ կգտնվի՞: Ես ու դու ենք ընկել էս ձմեռուկի մեջ, գերի մնացել, ճար ու ճամփա չկա դուրս գալու, քո աչքին դանակդ է երևո՞ւմ:

Գյուղացու թուքումուքը ցամաքեց:

— Բա ի՞նչ ենք անելու:

— Մի՛ վախենա,— ասաց չոբանը,— դու հո մենակ չե՞ս, ես քեզ հետ եմ, նստի կողքիս: Ես շվիս փչեմ, ոչխարներս իրենց սիրած «Չոբան բայաթին» որ լսեն, քարի տակից էլ լինի դուրս կգան, ձայնի վրա կմոտենան, կհավաքվեն շուրջս, հետո երկուսով ման կգանք, դանակդ էլ կգտնենք, հեչ չվախենաս...

Նստեցին կողք-կողքի, չոբանը նվագեց «Չոբան բայաթի» մեկ օր, երկու օր... Ոչխարները ձայնն առան ու մեկը մյուսի ետևից եկան հավաքվեցին: Հետո չոբանն ու գյուղացին ման եկան՝ գյուղացու դանակն էլ գտան: Հիմի էլ դես ճամփա, դեն ճամփա, ճամփա չկա, որ դուրս գան: Գյուղացու դանակով չոբանի ոչխարներից օրը մեկը մորթում էին, ուտում ու շարունակում ման գալ:

Չոբանի բոլոր ոչխարները հերթով կերան պրծան, գյուղացու դանակն էլ ոչխար մորթելուց մաշվեց, դարձավ ասեղի չափ, այդ ասեղն էլ ընկավ ձեռքներից կորավ: Լավ էր, ճամփի ծերն արդեն երևացել էր: Չոբանն ու գյուղացին դուրս եկան ձմերուկի միջից իրարից խռով, մեկն իր ոչխարների համար, որ կերել էին, հոտի վերջը տվել, մյուսն իր դանակի համար, որ մաշվել, ասեղի չափ էր դառել ու ասեղի պես կորել:

Գյուղացին, գլուխն առած, գնաց աջ, չոբանը՝ ձախ:

Թե քանի ամիս, քանի տարի էր անցել, չհասկացան: Ո՛չ չոբանը իր սարերը գտավ, ո՛չ գյուղացին իր գյուղն ու իր տունը:

Ձյուն ձմեռ էր:

Չոբանը ձմեռանոցներում չոբաններին էր պատմում գլխին եկածը, գյուղացին գյուղերի օդաներում՝ գյուղացիներին:

Լսողները լսում ու հոհռում էին.

— Այ քեզ պոչով ստ՜ստ...




Մշակումը՝ ԱՆ. ՍԱՀԻՆՅԱՆԻ

# ՍԻՐՎԱՐԴ ԷՄԻՐՋՅԱՆ

Սովորում է Երևանի մարզական վարպետության գիշերօթիկ դպրոցում: Ընդամենը տասնչորս տարեկան է, բայց արդեն հայտնի է աշխարհի շատ մարզասերների ու, հատկապես, նրանց, ովքեր սիրում են ջրացատկը՝ գեղեցիկների ու համարձակների մարզաձևը:

Սիրվարդը մեծ հաջողության հասավ անցած տարի, Բելոռուսիայի մայրաքաղաք Մինսկում անցկացված «Գարնանային ծիծեռնակներ» մրցաշարում գրավեց առաջին տեղը, իրենից ետ թողնելով իր բոլոր տիտղոսակիր ու ավագ մրցակիցներին: Նույն տարում նա Ռումինիայում կայացած «Եվրոպայի գավաթ»-ի խաղարկությունում աշխարհի ուժեղագույն ջրացատկորդների մեջ գրավեց պատվավոր չորրորդ տեղը, իսկ 1979 թ. Մոսկվայում ՍՍՀՄ ժողովուրդների սպարտակիադայում՝ 5-րդ տեղը (մրցումների օրերին նա հիվանդ էր):

Այս տարի օլիմպիադայից առաջ՝ թիբլիսյան մրցաշարում Սիրվարդը առաջին տեղը գիջելով վրացուհի Լիանա Ծոթաձեին՝ գրավեց երկրորդ տեղը:

Մոսկովյան օլիմպիադայում Սիրվարդը մինչև նախավերջին ցատկը ընթանում էր առաջին տեղում, բայց, ցավոք, վերջին ցատկի ժամանակ ավելորդ հուզմունքը և փորձի պակասը իրենց զգացնել տվեցին, և օլիմպիական չեմպիոնուհու կոչումը նվաճեց Մարտինա Եշկեն (ԳԴՀ): Երկրորդը մեր Սիրվարդն էր, երրորդը՝ Լիանա Ծոթաձեն:

Սիրվարդը առաջին հայ մարզուհին է, որ նման հաջողության է հասնում օլիմպիական խաղերում:

Իմ այն հարցին, թե աշխարհում ամենից շատ ո՞ւմ է սիրում, պատասխանեց. «Մայրիկիս»: Մի պահ մտածելուց հետո ավելացրեց. «Երբ գնացել էի ԱՄՆ՝ մրցումների, անընդհատ հիշում ու կարոտում էի մայրիկիս»:

*ԿԱՐԵՆ ՍԱՐԲԱՏՅԱՆ*

Լուսանկարը՝ ԴԱՎԻԹ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ

# ԱԶԱՏԱՐԱՐԸ

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ



## 1.

Կենդանաբանական այգում քիչ մարդ կար: Այդ ուրախացնում է տղային: Ուզածի չափ կանգնում է վանդակների մոտ, նայում կենդանիներին, նույնիսկ զրուցում հետները: Ոչ ոք չէր շտապեցնում, չէր խանգարում նրան: Այցելուների քչությունը, ըստ երևույթին, կենդանիներին էլ էր դուր գալիս: Մի փոքրիկ, խայտաբղետ թռչուն, որի անունը տղան չգիտեր, անընդհատ ծլվլում էր վանդակի չորացած ճյուղին:

— Այդ ինչի՞ համար ես այդպես ուրախ երգում,— չհիմացավ տղան:

— Ե՞ս եմ ուրախ,— ճտճտաց թռչունը,— սա իմացածս ամենատխուր երգն է:

— Իսկ ինչո՞ւ ես տխուր երգ երգում:

— Որովհետև... որովհետև,— կըմկըմաց թռչունը,— շատ եմ կարոտել ծնողներիս: Բացի այդ, ուրախ երգ երգելու համար կապույտ երկինք է պետք, ոչ թե անընդհատ թևերիս քըսվող այս ժանգոտ ճաղերը:

Տղան գուցե ուշադրություն չդարձներ թռչունի ասածների վրա, եթե քիչ այն կողմ չնկատեր վանդակի անկյունում կծկված կապիկին: Նա այնքան անտրամադիր էր, որ նույնիսկ մարդկանց չէր նայում: Տղան նրան նետեց իր շաքար-աքլորը, անանուխով մաստակը, մինչև անգամ շոկոլադի սալիկը, միևնույն է, կապիկը գլուխը չբարձրացրեց: Ըստ երևույթին շատ էր տխուր:

— Պա՛պ,— հոր ձեռքը պինդ բռնեց տղան,—կապիկները հայր-մայր ունե՞ն:

— Իհարկե,— ասաց հայրը,— այն բոլոր էակները, որոնք ապրում են աշխարհում, հայր-մայր ունեն:

— Բա որտե՞ղ են նրա ծնողները:

— Հեռվում, շատ հեռվում: Գուցե՝ Հարավային Ամերիկայում:

— Ոչ թե Հարավային Ամերիկայում, այլ՝ Աֆրիկայում,— առանց գլուխը բարձրացնելու ճշտեց կապիկը,—թեև դա ոչ մի նշանակություն չունի:

— Ի՞նչ,— չհասկացավ տղան:

— Ինչ որ լսեցիր,— ասաց կապիկը,— այդ երկու երկրները այստեղից նույնքան հեռու են:

— Դու շա՞տ ես ուզում տեսնել քո հայրիկին ու մայրիկին:

— Դա ոչ մի նշանակություն չունի,— հառաչեց կապիկը,— այստեղ բոլորն էլ ուզում են տեսնել իրենց ծնողներին:

— Բոլո՞րը:

— Իհարկե: Ի՞նչ է, չե՞ս լսում:

Տղան լարեց լսողությունը և նոր միայն ականջին հասավ առյուծի մռնչոցը: Երեխաները զգույշ շրջանցում էին նրա վանդակը, բայց տղան չվախեցավ: Ընդհակառակը՝ թողեց հորն ու մոտ վազեց: Այս մեկը ամենևին նման չէր այն առյուծներին, որ ինքը տեսել էր գունավոր կինոնկարներում: Մորթը մի տեսակ գզգզված ու թափված էր, իսկ վանդակից տհաճ հոտ էր փչում: Տղան աչքերը լայն բացած նայում էր հսկա կենդանուն, որն իր մարմնին անհամապատասխան ճկունությամբ գալարվում էր վանդակում և միալար ռռնում:

— Այդ ի՞նչ է, դուք ձեզ վա՞տ եք զգում,— կամաց հարցրեց նա ու ինքն էլ չհասկացավ, թե ինչու առյուծին «դուք»-ով դիմեց:

Ասենք, մեկ է, առյուծը արհամարհում էր բոլորին:

— Թո՛ղ, տղա՛, թո՛ղ,— բաշը թափահարեց նա ու շարունակեց նյարդային պտույտները:

Բայց տղան համառ էր:

— Եթե ձեր մի տեղը ցավում է, կարող եմ բժիշկ կանչել: Թե՞ դուք էլ կապիկի նման կարոտել եք ձեր...

— Ես իմ հայրիկին ու մայրիկին չեմ տեսել,— ընդհատեց առյուծը,— մարդիկ նրանց սպանել են, երբ իմ աչքերը բաց էլ չեն եղել: Ամեն երեկո, վերջալույսի այս պահին, ես իմ անապատն եմ կարոտում: Տղա՛, դու, երևում է, չգիտես,թե ինչպիսին է մայրամուտը անապատում: Երբ արևը հրդեհվում է հեռու-հեռուներում՝ ամպերի մեջ, ավազի շեղջերը ծովի ալիքների նման սկսում են անհանգիստ խշխշալ ու ցոլցըլալ վերջալույսի բոլոր գույներով: Ինձ համար ավելի մեծ երջանկություն չի եղել, քան այդ ավազների միջով սուրալ դեպի արևն ու այնպես խելագար ռռնալ նրա ետևից, որ ամպերն անգամ անձայն սարսռան: Այդ պահին, տղա՛, ինձ թվում էր, թե աշխարհը լըցված է միայն գեղեցկությամբ ու անսահմանությամբ և ես եմ նրա հավերժական տերը:

Առյուծը լռեց ու աչքերում արցունքի կաթիլներ հայտնվեցին: Բայց, համենայն դեպս, նա առյուծ էր և երևի չէր ուզի, որ մի փոքրիկ տղա տեսնի իր անզորությունը: Նա աչքերը փակեց, գլուխը թաքցրեց թաթերի մեջ:

Տղան մի քիչ էլ մնաց վանդակի մոտ, հետո հեռացավ: Բայց, միևնույն է, առյուծի տխրությունը իր հետ գալիս էր: Ինչ-որ տեղ էր չքվել նրա անհոգությունը, ու նա այլևս չէր կարողանում կանգնել վանդակների առջև, նայել կենդանիների աչքերին: Նա համարյա փախավ փետրաթափ ջայլամի, կոտրած պոզերով եղջերուի, անատամ վագրի մոտից: Նույնիսկ ուզում էր խնդրել հորը, որ տուն վերադառնան, բայց մի անսպասելի ձայն կանգնեցրեց.

— Ներեցեք, դուք իմ որդուն չե՞ք տեսել:

Գորշ, ճաքճքած կնճիթով փիղն էր:

— Որտե՞ղ է ձեր որդին,— զարմացավ տղան:

— Նրա անունը Վովա էր,— կընճիթը դանդաղ տարուբերեց փիղը,— նա կոտրեց այս մետաղե փակն ու փախավ, որպեսզի աշխարհի բոլոր փղերին կանչի, մեզ ազատի: Անցել է այսքան ժամանակ, նրանից լուր չկա:

Փիղը լռեց ու դոփեց գետինը: Դրանից նրա ոտքի շղթաները տխուր զընգացին:

— Դրա համա՞ր են ձեզ այսպես կապոտել,— խղճաց տղան:

Փիղը ձայն չհանեց:

Հանկարծ տղայի գլխում միտք փայլատակեց:

— Ասացե՛ք, իսկ դուք ուզո՞ւմ եք,— վանդակին մոտենալով շշնջաց նա,— դուք ուզո՞ւմ եք այստեղից փախչել:

Փղի լայն ականջները լավաշի պես երկարեցին, կախվեցին ցած:

— Ի՞նչ օգուտ, որ ուզում եմ:

— Չէ՛, դուք միայն համաձայնե՛ք: Ես գիշերը կգամ, կբացեմ ձեր բոլորի վանդակները:

— Շատ երեխաներ են այդ խոստացել, բայց տուն են հասել՝ մոռացել: Դու էլ կմոռանաս: Նրանք, ովքեր վանդակներում չեն ապրում, չեն կարող մեզ զգալ:

Տղան ոչինչ չպատասխանեց: Նրա մատները ամուր սեղմվեցին բռունցքի մեջ: Միշտ այդպես էր լինում, երբ ինքն իրեն մի կարևոր ու անհետաձգելի որոշում էր կայացնում: Լավ է, հայրը ոչինչ չզգաց: Նա չհասկացավ նույնիսկ, թե ինչու որդին հրաժարվեց «Հեքիաթ» սրճարանից, մուլտիպլիկացիոն կինոնկարից և խնդրեց տուն վերադառնալ:

## 2.

Գիշերը, ծնողների ննջարանի լույսը մարելուց քիչ անց, նա հագնվեց ու դուրս եկավ փողոց: Նա այդքան ուշ երբեք մենակ չէր եղել դրսում, բայց զարմանալի կերպով իրեն լավ էր զգում: Ամենակարևորը՝ ոչնչից չէր վախենում: Ու այնպես արագ, վստահ էր քայլում, կարծես գնում էր անգիր արած դասը պատասխանելու:

Կենդանաբանական այգում մութմութ էր: Պահակը, խցիկի լույսը վառ թողած, գլուխը հենել էր սեղանին, քնել: Տղան ճաղերի արանքից ներս խցկվեց, խարխափելով բացեց առաջին պատահած դուռը: Մթան մեջ չէր էլ երևում, թե ով է վանդակում, բայց նա գլուխը մտցրեց ու կամաց շշնջաց.

— Դո՛ւրս եկեք, դուք ազատ եք:

Չսպասելով պատասխանի, շտապեց դեպի հաջորդ վանդակը: Հետըզհետե նա վարժվում էր մթին, սողնակները բացելու ձևին: Քիչ անց, երբ ետ նայեց, աչքերին չհավատաց: Խավարի մեջ, կենդանիների մի հոծ թափոր հլու-հնազանդ գալիս էր իր ետևից: Շատերը նույնիսկ օգնում էին իրեն: Գայլի, հովազի նման ճարպիկ գազանները ատամներով արագ-արագ պոկում էին մետաղե կողպեքներ, շղթաներ ու մինչև անգամ վանդակների ճաղեր:

— Իսկ հիմա, երբ կենդանաբանական այգում ոչ մի փակ դուռ չէր մնացել,— հրահանգեց տղան,— բոլորդ՝ իմ ետևի՛ց: Միայն՝ առանց աղմուկի:

Մինչև դարպասը կենդանիները տղային հետևում էին լուռ, բայց, փողոցում, հազիվ մի քանի քայլ արեցին ու սկսեցին տրտնջալ:

— Կամաց գնացեք, մութ է, բան չենք տեսնում:



— Ո՜ւֆ, ասֆալտի վրա սողալ չի լինում:

— Այնքան եմ վանդակում նստել, քայլելը մոռացել եմ:

— Իսկ ես, թռչել չեմ կարողանում: Թևերս կարծես մեջքիս կպած լինեն:

— Ոչինչ, ոչինչ,— ճուսադրում ու շտապեցնում էր տղան,— շուտով կըվարժվեք: Կարևորն այն է, որ արդեն ազատ եք:

Գազանները խեղճացել էին: Հաստ ու կլոր, խողովականման գետաձին, երկարավիզ ընձուղտը, գիշատիչ լուսանը կծկվել, մի բուռ էին դարձել: Տղան զգում էր, թե ինչպես խավարի մեջ սրթսրթում են նրանք ու աննկատ իրար սեղմվում: Այդպես, իրար մոտենալով, վայրի գազանները միատարր զանգված դարձան, աստիճանաբար ետ-ետ սողացին ու անհետացան կենդանաբանական այգու պարիսպների ներսում: Տղան ուզում էր գոռալ, կանգնեցնել նրանց, բայց ձայնը դուրս չէր գալիս: Ասենք, կենդանիները նրա կողմը չէին էլ նայում: Նրանք երբեք այդքան վախեցած ու խուճապահար չէին եղել:

...Նա սթափվեց մեղմ շոյանքից: Մայրը կանգնած էր գլխավերևը:

— Վե՛ր կաց, բալի՛կս, դպրոցից չուշանաս...

*Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ*

# ԴԱՎԻԹ ԱՆՀԱՂԹ

**Այս տարի ՅՈՒՆԵՍԿՕ-ի որոշմամբ համաշխարհային գիտական հասարակայնությունը տոնեց վաղ միջնադարի հայ մեծ փիլիսոփա ԴԱՎԻԹ ԱՆՀԱՂԹԻ ծննդյան 1500-ամյակը։**

Սասանյան Պարսկաստանի նվաճողական քաղաքականության դեմ պայքարող հայ ժողովուրդն իր անկախությունը պահպանելու համար պետք է ստեղծեր իր նոր մշակույթը։ Մեսրոպ Մաշտոցը ստեղծեց հայոց գիրը, Կորյունը, Ագաթանգեղոսը, Փավստոս Բուզանդը, Եղիշեն, Եզնիկ Կողբացին և մյուսները գրեցին հայերեն առաջին պատմական և իմաստասիրական աշխատությունները։ Հայ ժողովուրդը պետք է ստեղծեր նաև իր փիլիսոփայական միտքը, և ստեղծեց՝ հանձին Դավիթ Անհաղթի։

Հայ մեծ փիլիսոփա Դավիթ Անհաղթի վերաբերյալ կենսագրական տվյալները կցկտուր են։ Ենթադրվում է, որ ծնվել է մոտ 480 թվականին, Տուրուբերան նահանգի Հարք գավառի Ներգին բնակավայրում, և ծննդավայրի անունով կոչվել նաև Դավիթ Ներգինացի։ Ուսանել է Ալեքսանդրիայում, Նորպլատոնականության ականավոր ներկայացուցիչ Ոլիմպիոդորոս Կրտսերի դպրոցում։ Հաղթող է հանդիսացել Աթենքում և Կոստանդնուպոլսում անցկացված փիլիսոփաների մրցույթներում, արժանացել «Երիցս Մեծ և Անհաղթ փիլիսոփայի» կոչման։ Վերադառնալով Հայաստան, գրել է իր փիլիսոփայական երկերը, որոնցից մեզ են հասել չորսը։ Պահպանվել են նաև Դավիթ Անհաղթի աշխատությունների հունարեն տարբերակները։

Դավիթ Անհաղթի փիլիսոփայությունը հիմնված էր անտիկ աշխարհի խոշոր փիլիսոփաներ Պլատոնի, Արիստոտելի, Պյութագորասի աշխարհիկ փիլիսոփայական ուսմունքների վրա։ Նա ապացուցում էր, որ աշխարհը ճանաչելի է, մարդն ընդունակ է ուսումնասիրել ու հասկանալ իրեն շրջապատող իրերն ու երևույթները։ Մարդն աշխարհը ճանաչում է նախ զգայությամբ, ապա երևակայությամբ, տրամախոհությամբ և վերջապես բանականությամբ։ Նա իր ամենաարժեքավոր՝ «Իմաստասիրության սահմանները» երկում դասակարգում էր գիտությունները, դրանք բաժանում տեսական և գործնական գիտությունների։ Տեսական գիտությունների շարքում դասում էր բնագիտությունը (ֆիզիկա), մաթեմատիկան, աստվածաբանությունը (մետաֆիզիկա), գործնական գիտությունների՝ բարոյագիտությունը, տնտեսագիտությունը, քաղաքականությունը։ Դավիթ Անհաղթը նախապատվությունը տալիս էր գործնական գիտություններին՝ գործնական փիլիսոփայությանը, գտնում էր, որ գիտությունները առաջացել են մարդկանց գործնական պահանջներից և պետք է հետագայում էլ ծառայեն նրանց։ «Երկրաչափությունը,— գրում էր նա,— ստեղծեցին եգիպտացիները, որովհետև Նեղոսը բարձրանալով հեղեղում էր նրանց հողակտորների սահմանները», իսկ «փյունիկեցիները, լինելով առևտրական, կարիք ունեին հաշվողական արվեստի, և ստեղծեցին թվաբանությունը»։ Դավիթ Անհաղթի գիտությունների այդ դասակարգումը մեծապես նպաստեց Հայաստանում աշխարհիկ գիտությունների զարգացմանը։

Նա գտնում էր, որ առանց

մարդու տիեզերքը ոչինչ է ու դատարկ, մարդու գոյությունն է իմաստավորում աշխարհը, ուստի փիլիսոփայությունը պետք է ծառայի մարդուն, օգնի նրան դառնալ բարի ու առաքինի։ Նա մարդու հոգեկան կատարելությունը բարձր էր համարում գիտելիքների կուտակումից, Պլատոնի նման՝ փիլիսոփա կոչվելու արժանի համարում ոչ թե այն մարդուն, որը կարող է ճարտասանել ցանկացած իրի և երևույթի մասին, այլ նրան, ով առաջին հերթին իր գործերով է անարատ և ազնիվ։ Բարձր դասելով ճշմարտությունը, Դավիթ Անհաղթը գտնում էր, որ այնուամենայնիվ այն չպետք է հակասի խղճին։ Խոսելով երջանկության մասին, նա գրում էր, որ իսկական երջանկությանը հասու է միայն արդար և բարի մարդը, եթե անգամ նա անտեսված է ու չքավոր, իսկ անիրավն ու չարը, եթե նույնիսկ հզոր է ու հարուստ, հասու չէ դրան։

XIV դ. հայ փիլիսոփա Առաքել Սյունեցին, որը մեկնել է Դավիթ Անհաղթի «Իմաստասիրության սահմանները» երկը, գրում է, որ նա հալածվեց և ստիպված եղավ հեռանալ Հայաստանից։ Դժվար է ասել, թե որքանով է արժանահավատ այս տեղեկությունը, սակայն մի բան պարզ է, որ Դավիթ Անհաղթի առաջադեմ հայացքները պետք է հարուցեին եկեղեցու դժգոհությունը։ Չնայած դրան, Դավիթ Անհաղթը Հայաստանում միշտ էլ եղել է ամենահարգի և մեծարված հեղինակներից մեկը։ Ըստ ավանդության, Դավիթ Անհաղթը թաղված է Մուշ քաղաքի մոտ, հայ մշակույթի հնագույն պանթեոնում։

*ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*



# «ԾՂՐԻԴԸ»

Այսպիսի փաղաքշական անուն էին տվել զինվորները Հայրենական մեծ պատերազմի ահեղ տարիներին Դոնի տափաստաններից մինչև Բալթիական ծով ձգվող մեծ և դժվարին ուղի անցած ուղտին։ Շատ ճակատայիններ Ծղրիդին հանդիպել էին Կուրսկի աղեղում, Բելոռուսիայի անտառներում և ճահիճներում, Լեհաստանի քաղաքներում և գյուղում, որի վրա մինչ այդ ոչ մի ուղտ ոտք չէր դրել։ որջում՝ Արևելյան Պրուսիայում, այսինքն այն հողում, որի վրա մինչև այդ ոչ մի ուղտ ոտք չէր դրել։

Ինչպե՞ս էր Ծղրիդը ռազմաճակատ ընկել։

Այդ հարցին տարբեր պատասխաններ էին տալիս։ Ոմանց ասելով, ուղտը 1942 թվականի աշնանը ինքն էր եկել հրետանավորների մոտ, երբ ձիերին խոտով էին կերակրում։ Երևի փափուկ, հյութեղ և բուրավետ խոտը համեղ խորտիկ է թվացել նրան՝ իր ամենօրյա կերակրի հետ համեմատած։

Ուրիշները պնդում էին, թե Ծղրիդը հարևան դիվիզիայի թնդանոթաձիգների նվերն է։ Երրորդները ապացուցում էին, որ մի ամբողջ շաբաթ առանց ջրի քայլելուց հետո կենդանին պառկած է եղել ռումբից

առաջացած մեծ ձագարի մեջ: Այս ասողները, ի մեծ ուրախություն լսողներին, ցույց էին տալիս, թե նա ինչպես էր գունդուկծիկ պառկել փոսի մեջ:

Ինչ էլ լիներ, Տղրիդը անձնվիրաբար կատարում էր իր համար անսովոր աշխատանքը: Ամենից առաջ նա լավ կողմնորոշող էր, կարծես փարոս լիներ:

Մի անգամ, երբ գնդի ստորաբաժանումները Օռլով քաղաքից և ճամփաներից հեռու անտառում կռիվ էին մղում, կրակային գծի վրա հայտնվեց «Կարմիր աստղ» թերթի թղթակից, գրող Վասիլի Գրոսմանը:

— Ինչպե՞ս եք մեզ գտել,— զարմացավ մարտկոցի հրամանատարը:

— Շատ պարզ,— պատասխանեց հյուրը:— Բարի մարդիկ ինձ խորհուրդ տվին ոչ մի տեղ կանգ չառնել, այլ փնտրել «ըստ Տղրիդի»: Այդպես էլ վարվեցի:

Արևախանձ տափաստանների բնակիչը հիանալի հարմարվել էր և՛ ձյունապատ ճամփաներին, և՛ խրուտ ճահիճներին, և՛ անանցանելի անտառներին: Իր սապատի վրա կենդանին պահեստից կրակային գիծ էր տեղափոխել արկերով լի հարյուրավոր ծանր արկղեր:

Եղավ նաև, որ ուղտը թնդանոթ տեղափոխեց, իսկ հետո էլ՝ երթային խոհանոցը, չոր վառելափայտի պաշարով, որի կարիքն այնքան զգացվում էր պատերազմի ժամանակ:

Տղրիդը լրիվ հարմարվել էր ճակատային պայմաններին, և դատելով նրա աշխույժ տեսքից, իրեն լավ էր զգում: Չորս անգամ վիրավորվել էր, բայց ամեն անգամ զինվորները նրան հոգատարությամբ բուժել էին: Հինգերորդը ճակատագրական դարձավ կենդանու համար: Այդ հիանալի չորքոտանի բարեկամի կյանքի թելը կտրվեց թշնամու ավիացիայի ուժեղ ռմբակոծության ժամանակ: Դա 1945 թվականի գարնանն էր, Բալթիկ ծովի մատույցներում:

Նա քսան տարեկան էր: Գիտակների կարծիքով, խաղաղ պայմաններում աշխատելու դեպքում նա կարող էր ապրել ևս քսան տարի:




Բնության մեջ հայտնաբերված ամենաքաղցր նյութը «հեքիաթային հատապտուղներին» պատկանող «դիասկորեոֆիլում կումինսի»-ի պտուղն է, որը հանդիպում է միայն Նիգերիայում: Մասնագետները հայտնաբերել են, որ այդ բույսի պտուղը 1500 անգամ քաղցր է բուսաշաքարից:

Աշխարհի ամենադիմացկուն մանրէները միկրոկուս ռադիոդուրանս մանրէներն են, որոնք կարող են դիմանալ տասը հազար անգամ ավելի ուժեղ ատոմային ճառագայթման, քան մարդը:

Ամենախոր արմատը հայտնաբերվել է 1948 թվականին Հարավային Աֆրիկայում հորատման ժամանակ: Դա ակացիայի մի տեսակի արմատն էր, որ հասել էր 45 մետր խորության:

# ԿԵՆԴԱՆԻՆԵՐԸ



## ՔԱՋ ՈՒ ՀՆԱՐԱՄԻՏ ՆԱՊԱՍՏԱԿԸ

Հեքիաթներում նապաստակը պատկերվում է իբրև խորամանկությունից զուրկ ու երկչոտ կենդանի: Իրականում միշտ չէ, որ այդպես է, վախկոտ նապաստակն էլ կարող է պաշտպանել իր կյանքը:

Նովոռոսիյսկի բնակիչ Յուրի Մակարովը իր ընկերոջ հետ ականատես է եղել հետևյալ մենամարտին...

Անտառամերձ թփուտների միջից դուրս ցատկեց մի նապաստակ. ապա երևաց աղվեսը: Թվում էր, թե նապաստակը փրկության ճար չունի: Բայց հանկարծ նապաստակը կանգ առավ, շրջվեց և թաթով ուժգին հարվածեց աղվեսի դնչին: Նահանջեց, իսկ ապա, բռնցքամարտիկի պես, մի անգամ էլ խփեց: Աղվեսը, որ ոչ մի դիմադրության չէր սպասում, չհամարձակվեց մենամարտի մեջ մտնել և սուսուփուս վազեց դեպի անտառ:

## ՁԿՆՈՐԴ ՁԿՆՈՐՍ ԱՐԱԳԻԼԸ

Սպիտակ մի արագիլ ուզեց ձուկ ուտել: Թռավ եկավ լևայա Լեսնայա գետը, գրնաց ծանծաղուտները: Սուր աչքերով սկսեց ջրի մեջ ձուկ փնտրել և ահա տեսավ... մանրը մինոգաներ: Եվս մի ակնթարթ, և ձկնիկը արագիլի կտցի մեջ է: Բայց պարզվեց, որ ձկնիկը կով էր տվել խայծը կարթի հետ միասին. իսկ կարթաթելը ամրացված էր փոքրիկ ցցիկից: Ջախորդ ձկնորսը կուլ տվեց ձկնիկին, նրա հետ և խայծն ու կարթը:

Արագիլը քաշեց-քաշքշեց կարթաթելը, մինչև որ հողից դուրս հանեց ցցիկը, և այդպես, կտուցից քարշ տալով կարթաթելն ու բրիկը, թռավ դեպի հարազատ բույնը: Արագիլն, իհարկե, համոզված էր, որ այնտեղ, գյուղում, մարդիկ կօգնեն իրեն: Բայց թռիչքի ժամանակ բրիկը փաթաթվեց ծառի ճյուղերին և խեղճ արագիլը մնաց ծառից կախված:

Մարդիկ տեսան, որ թռչունը փորձանքի մեջ է ընկել, շտապեցին օգնության: Այն տան տերերը, որի կտուրին արագիլը բույն էր դրել, հանեցին նրան ծառից և շտապ տարան «Բելովեժսկայա պուշչա» արգելանոցի անասնաբուժական կետը: Այնտեղ արագիլին ցույց տրվեց անհրաժեշտ բուժօգնություն, և նա թռավ՝ շարունակելու իր ձկնորսությունը:

Հաջողություն ցանկանանք այդ բարի թռչունին:





## ՅՈԹ ԼՈՂՈՐԴՆԵՐԸ

Տրակտորիստ Մալենկոյի մոխրագույն ածան հավը կորավ: Նա, իհարկե, ափսոսաց հավիկին: Բայց ահա երեք շաբաթ անց հավիկ-մայրիկը հայտնվեց, և ոչ մենակ, նրա ետևից շորորալով գալիս էին յոթ ճուտիկներ: Տրակտորիստն ավելի ուշադիր նայեց յոթնյակին, տեսավ, որ դրանք բադիկներ են: Մոխրագույնն, ուրեմն, հասել էր վայրի բադերի մոտ և գրավել էր թխսկանի տեղը: Բադերն, իհարկե, չէին կարող վռնդել հավիկին, որն ավելի զորեղ է նրանցից:

Տրակտորիստի կինը կեր տվեց ճուտիկներին, տաշտակի մեջ ջուր լցրեց, և բադիկները համարձակ ջուրը մտան ու սահուն լող տվին: Մոխրոտիկը խուճապի էր մատնվել, հանկարծ չխեղդվեն իր բալիկները: Հանգստացավ միայն, երբ ճուտիկներին հանեցին տաշտակից: Ձագուկներին հավաքեց թևերի տակ, կոթացրեց բարկացած...

Որոշ ժամանակ անց բադիկներին տարան մոտակա լճակը: Հենց որ նրանք լողացին՝ նրանց մոտեցան երկու վայրի բադ: Եվ ամեն ինչ ընկավ իր տեղը:

# ՈՒ ՄԱՐԴԸ

## ՓՇՈՏԻ ՄԱՐԱԹՈՆԸ



Դոնեցկի առաջին քաղաքային հիվանդանոցի աշխատակից Ն. Ուշակովան իրենց տան մոտի անտառակում գտավ մի ոզնի՝ թաթիկը կոտրած։ Օգնություն ցույց տալով՝ նա ոզնուն տար'ավ տուն։ Տոպեին, ինչպես անվանեցին կենդանուն, դուր եկավ տնային հարմարավետությունը և հաճույքով արձագանքում էր, երբ կանչում էին։

Ոզնին շատ դուր եկավ Նադեժդա Իվանովնայի թոռնուհուն, որը հյուր էր եկել Դոնեցկ։ Տատիկը ստիպված էր բաժանվել սիրելի ոզնուց և ոզնին հայտնվեց Դմիտրով քաղաքում։ Բայց Տոպեն չուզեց ճանաչել նոր տերերին. անհանգիստ շրջում էր բնակարանում, չէր ուտում։ Մի քանի օր հետո նոր տերերը, հարկադրված, նրան բաց թողեցին մոտակա պուրակում։

Եվ որքան մեծ էր Ուշակովայի զարմանքը, երբ երկու ամիս անց, աշխատանքից տուն գալով, նա տեսավ Տոպեին, որ ուրախ-ուրախ շտապում էր դեպի հին տիրուհին։ 60 օրում փշոտ մարաթոնականը անցել էր 70 կիլոմետր տարածություն։ Օրական Տոպեն անցել էր միջին հաշվով 1170 մետր։

Հնարավո՞ր բան է արդյոք։

Այո։ Գիտնականները հաստատեցին, որ ոզնիները կապվում են մարդկանց, ճանաչում են իրենց տերերին։ Այդ կենդանիները ունեն տեղանքում կողմնորոշվելու փայլուն ընդունակություն։



## ՀԱՎԱՏԱՐԻՄ ՆԱՊԱՍՏԱԿԸ

Աստրախանցի մեխանիկ Յուրի Կորոբովը գնաց ձուկ որսալու։ Գետափին, թփուտներում տեսավ հրացանով խփված մի էգ նապաստակի, իսկ նրա կողքին, ասես քարացած, կուչ էր եկել արուն։

Կորոբովը քայլեց դեպի վշտահար մոխրոտը, բայց նա տեղից չշարժվեց, չփախավ։ Մարդը ձեռքն առավ սգավոր նապաստակին. հո վիրավորված չէ՞։ Ողջ-առողջ է։ Մտածեց՝ այսպես գործուկը կարող է հեշտ որս դառնալ թշնամիների համար։ Վերցրեց, բավական հեռացավ զոհված նապաստակից, դրեց խոտերի վրա, ծափ զարկեց, շվվացրեց։

Ճղիկը ցնցվեց և դանդաղ ցատկելով գնաց դեպի թփուտները, որտեղ իր զոհված ընկերուհին էր։

*Հավաքեց՝*
*ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑԸ*




●

Աշխարհի ամենաբարձր կենդանին ընձուղտն է։ Քենիայում հայտնաբերվել է մի ընձուղտ, որի բարձրությունը հասել է 5,8 մետրի, իսկ քաշը՝ 1,7 տոննայի։

●

1926 թվականի հունիսի 4-ին ԱՄՆ-ի Մոնտիչելո քաղաքում ծնված Ռոբերտ Էրլ Հյուզը դարձավ ամենածանր մարդը։ Ծնվելիս՝ նրա քաշը եղել է 5 կիլոգրամ, 6 տարեկան հասակում՝ 89 կիլոգրամ, տասը տարեկանում՝ 171 կգ, 18 տարեկանում՝ 314 և 25 տարեկանում՝ 406 կիլոգրամ։ Նրա առավել քաշը եղել է 485 կիլոգրամ։ Նրա բոյը եղել 183 սանտիմետր, գոտկատեղը՝ 310, կուրծքը՝ 315։

Նրանից ավելի ծանր քաշ է ունեցել Կարոլինացի Ջոն Ալին՝ 518,5 կիլոգրամ։ Նա զոհվել է իր տան ներքնահարկում, երբ նրա ծանրության տակ փլվել է տան հատակը։




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15: Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-88, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 10 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980



Շապիկի առաջին էջը՝ ՄԵԼԱՆՅԱ ՕՀԱՆՋԱՆՅԱՆԻ
Իջևան, 3-րդ դասարան

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 04861: Պատվեր 1376: Տպաքանակ 51044: Տպ. 3 մամ.: Թուղթ՝ 70×100 1/16: Հանձնված է արտադրության 25/VIII 1980 թ.: Ստորագրված է տպագրության 20/X 1980 թ.:

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ՍԱՀՄԱՆՆԵՐ ՉՈՒՆԻ



Այս տղան ու այս թռչունն ապրում են Բերինգի կղզում։ Երկուսն էլ Խաղաղ օվկիանոսի ջրերով շրջապատված կղզուց բացի, այլ երկիր չեն տեսել։ Տղայի անունը Վոլոդյա Խրիստիչենկո է։ Նա ապրում է ավանում գտնվող փայտյա տնակում, գնում է դպրոց։ Մարտին անունով մեծ ճայն ապրում է ծովափին, իր նման ճայերի մեծ գաղութում։ Տեղատվությունից հետո ծանծաղուտներում օվկիանոսը հազար ու մի մանր ծովային կենդանիներ է թողնում։ Ճայերը մինչև երեկո որս են անում այդտեղ, թռչում, ճչում, կռվում։ Իսկ երեկոյան գաղութը հավաքվում է գիշերատեղում։ Թռչունները գլուխները ներս քաշած ննջում են, ոչ այն է քնում են, ոչ այն է՝ ննջում։

Երեկոյան ես ու Վոլոդյան քայլում էինք ծովափով և վախեցրինք ճայերին։ Նրանք սկսեցին աղմկել և օդ բարձրացան։ Հսկա թևերով հարյուրավոր թռչուններ թռչում էին ափի երկայնքով։ Մեկն էլ մի ճայ անջատվեց նրանից և ուղղվեց դեպի մեզ։ Եկավ, եկավ ու նստեց իմ ուղեկցի ուսին։ Վոլոդյան կանգ առավ։ Ճայը ծալեց թևերը և հանգիստ սկսեց շուրջը նայել։ Տղան զարմացած չէր…

Գարնանը Վոլոդյան ծովափից վերցրել էր ուժասպառ, թրջված, թռչել չիմացող ձագուկին։ Տաքացրել էր, չորացրել ու պահել տանը, կերակրում էր, խնամում։ Ճայը մեծացավ ու վերադարձավ գաղութ։ Բայց ինչ-որ բան մնաց ազատ թռչունի հիշողության մեջ։ Երբեմն նա թռչում գալիս է ու նստում փայտե խրճիթի տանիքին։ Իսկ երբ Վոլոդյան ծովափ է գնում, ճանաչում է տղային ու եթե շուրջը քիչ մարդ է լինում, իջնում է նստում նրա ուսին։

Բարեկամությունը սահմաններ չունի։

Վ. ՊԵՍԿՈՎ

## № 9 ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ № 9

**ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ**

1. Հունիս։ 3. Մեկ։ 4. Ղեկ։ 6. Իմեն։ 7. Կաղին։ 8. Ամրակ։ 10. Թելուկ։ 13. Կեռաս։ 14. Կռունկ։ 18. Կարթ։ 22. Բուրդ։ 24. Առնետ։ 25. Իրտիշ։ 26. Կազբեկ։ 27. Եսենին։ 28. Արշակ։ 30. Անտառ։ 31. Սունկ։ 33. Տոպաս։ 37. Ծերամ։ 39. Տոմատ։ 40. Արձակ։ 42. Կածան։ 43. Արտեկ։ 44. Արթիկ։ 45. Կոն։ 46. Տուն։ 47. Սիրաս։

**ՈՒՂՂԱՀԱՅԱՑ**

1. Հակինթ։ 2. Սողնակ։ 3. Մողես։ 5. Կորեկ։ 7. Կառք։ 9. Կճուճ։ 11. Եփրատ։ 12. Ուռենի։ 13. Կիր։ 15. Կկու։ 16. Մանուշակ։ 17. Պատատուկ։ 18. Կրկես։ 19. Թմբուկ։ 20. Կակաչ։ 21. Կշեռք։ 22. Բրեստ։ 23. Դանիա։ 29. Կապար։ 30. Աշորա։ 32. Նուշ։ 34. Ուղտ։ 35. Երակ։ 36. Օմսկ։ 38. Մոծակ։ 39. Տիտան։ 40. Անանաս։ 41. Կակտուս։










▲ Գտեք յուրաքանչյուր ճուտիկի կոտրած կճեպը:

◀ Նկարի ձախ կողմում պատկերված վազորդներից յուրաքանչյուրին գտեք աջ կողմի նկարում:

▼ Լաբիրինթոսի № 1-ին դահլիճից փորձեք հասնել № 2-րդ դահլիճը:




ԳԻՆԸ 15 Կ.

ԻՆԴԵՔՍ 77806